# ԱՂԱՒՆԻ

ՎԻՊԱՍԱՆՈՒԹԻՒՆ

Պ. ՓՐՈՍՓԵՐ ՄԵՐԻՄԷ

ԳԱՂՂԻԱՑԻՈՑ

---

ՎԵՆԵՏԻԿ

Ի ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

1863

# Ա. Զ Դ.

Յուսալով որ ընտիր վիպասանութեանց ընթերցումն օրէ օր աւելի ախորժելի կըլլայ ազգերնուս, յետ Բազմավիպի էջերուն մէջ 'ի լոյս ընծայելու՝ նաև առանձին կը հրատարակենք Աղաւնի վիպասանութիւնն :

Հեղինակն է Պ. Բրոսբէր Մէրիմէ կենդանի մատենագիրը, որ 1844էն 'ի վեր Գաղղիոյ Ճեմարանին ընդունուած է : Ըստ այլոց բազում անուանի հեղինակաց՝ փաստաբանութեամբ սկսաւ իր ընթացքը. յետոյ քաղաքագէտ կենաց և առաւել ևս գրականութեան պարապեցաւ :

Թողունք յիշելու իր խուռն յօդուածները այլ և այլ օրագրոց մէջ, գաղղիացի ընտիր հեղինակաց ապագրութիւնքը և զանազան վայելուչ գրուածքներ, գլխաւորապէս երկու կը բաժնուին իր բազմաթիւ երկասիրութիւնքը. Հնագիտականք, ինչպէս Ուղեւորութիւնք 'ի հարաւային Գաղղիա.

յարեւմտեան Գաղղիա, յՕվեռնեն եւ 'ի Լիմուզ-ենի. Ուղեւորութիւն 'ի Գորսիգա. Պատմական յիշատակարանք, եւ այլն. վիպասանականք, ինչպէս Դամանկոյ, Հոգիք քաւարանի, Տեսակ Կարողոսի ԺԱ-ի, Պուլեռոյի ժանտաքառ. Անօթն եդրուսկեան, Արսէն Կիյոյ, եւ այլն. ամէնն ալ գեղեցիկ, եւ գեղեցկագոյն 'ի նոսա՝ Աղաւնին (Գոլոմպա). որ Գորսիկայի բնակչաց բարուց անանկ յատուկ ու ճըշգրիտ նկարագրութիւնն է, որ ըստ ամենայ ժամանակներ երեւելի քննադատի մը՝ Աղաւնին կարդացողը կըզգէն զգացած կըլլայ։ Նաս կարդացուած է եւ ցարդ կը կարդացուի այս վիպասանութիւնը. աշխոյժ կենդանութիւն մը, պարզութիւն խառնեալ զօրաւոր տեսարանաց հետ, միակերպ ընթացք դէպ 'ի նպատակը հանդերձ բազում՝ զանազանութեամբ, եւ բնական ու ամենուն դրութիւն մը՝ իր նշանաւոր ձիրքն են։ Վրէժխնդրութեան կերպն իր ամէն սաստկութեամբը նկարագրելու ատեն՝ ընթերցողաց կը թողու հեղինակը զան զատապարտելը։ Հարկ կը համարինք ծանուցանել որ երբեմն ըստ պիտոյից ճիշդ համապատասխանութիւն չենք պահած թարգմանութեանս մէջ։

Պ. Մերիմէ այսօրուան օրս վախճանեալ է։

լակերպութիւնը[1] միջակ բան մը երև-
ցեր էր իր աչքին, և բորբոքած վեզուվը՝
հազիւ հազ Պիրմինկէմի գործարանաց
կրակարաններէն վեր: Իր Իտալիոյ չը-
հասնելուն պատճառ կու տար՝ տեղա-
կան յառակութիւն և որոշից հանգա-
մանք չունենալը: Ով որ կրնայ թող
հասկընայ այս երկու բաները. քանի մը
տարի առաջ ես ալ կը հասկընայի, բայց
այսօրուան օրս չեմ ըմբռներ: Ճանա-
պարհորդութենէն առաջ Լիւդիա օրիոր-
դը կը կարծէր անանկ բաներ տեսնալ
Ալպեան լեռներէն անդին, որ ոչ ոք տե-
սած ըլլար իրմէն առաջ. սակայն ամէն
տեղ իր հայրենակցաց հետքը կը տես-
նէր, և նոր բան մը չգտնելուն վրայ
յուսահատած՝ միւս ճանապարհորդաց
կարգն անցաւ: Իրօք մարդուն սիրտը
շատ կը կոտրի՝ երբոր Իտալիոյ հրաշա-
լեաց վրայ խօսելու ատենը, դիմացինն
հարցընէ իրեն թէ «Ես քաղքին ու
պալատին մէջ Ռափայէլի ու պատկե-
րը տեսած եմ. Իտալիոյ մէջ ապրող

1. Ռափայէլի [illegible] Այլակերպութեան
պատկերը՝ նկարչութեան առաջին հրաշալիքը սե-
պուած է և կը պահուի Վատիկանի մէջ:

բան մը կայ ’նէ՝ ան է ». և ինքն անհոգութեամբ զանիկայ առած չըլլայ։ Ուստի սրամտեան գիրքին բան չէ ամէն բան առնանալ, այդպիսիք անխտրաբար վար կը զարնեն ո՛ և է բան։

Լուզիա օրիորդն անգամ՝ մը շատ պզտիկ ինկաւ Պօլսոյ պանդոկին մէջ. Սէնեւի քաղաքին[1] կիւկլոպեան կամ՝ պելասգեան դրան ազնիւ ծրագիր մը շինած էր, և մինչէն չէր անցնէր թէ իրմէն առաջ մարդ ծրագրած ըլլար զանիկայ. բայց Ֆրէնուէզ Ֆէնուէլը ակինոց հանդիպելով Մարսէյլի մէջ, անոր յիշատակի տետրին (Album) մէջ նուագի մը և թառամած ծաղկի մը մէջ առսու նկարուած զանիկայ Մինեայի գեղին հողուն ներկուէր։ Լուզիա մէկէն աննեկարան ադախեայն առաւ իր ծրագիրն և պելասգեան շէնքերուն վրայ համարանդրը կորսնցուց։

Նոյն կարծիքներն հաղորդեր էր իր հօրը՝ Նէմկիլ հազարապետին, որ իր կնոջ մահուընէն ետև՝ աղջկանն աչքովը կը տեսնար ամէն բան, և տատակ կ՚որ-

1. Սէնեւի հանդայ տեղացութեան մէջ կ՚էյնայ։

համարձէր զԻտալիա Լիդիան ձանձրացընելուն համար, ինչ համար ալ անկէց աւելի ձանձրալի երկիր չէր գտնար աշխարհիս մէջ։ Իրաւ՝ նկարներու և արձաններու դէմ չէր խօսէր Հազարապետը, բայց որսը շատ քիչ է կ՚ըսէր և Հռոմայ դաշտին մէջ տասը փարսախ տեղ առաջ երթալու է բաց օդուն մէջ՝ որ կարենաս քանի մը խեղճ կարմիր կաքաւներ որսալ։

Մարսէյլ հասնելուն երկրորդ օրը՝ Նեվիլ սեղանի հրաւիրեց Էլլիս հարիւրապետն որ ատենօք իր աջակից պաշտօնակալն (Adjudant) եղած էր։ Էլլիս վեց շաբաթ Գորսիգա կղզին կեցեր էր ու անկից կը դառնար. աշխոյժ նկարագրութեամբ պատմեց օրիորդին աւազակաց պատմութիւն մը, որ բնաւ չէր նմանէր Հռոմէն Նեապոլոյ ճամբուն վրայ եղած գողոց պատմութիւններուն։ Աղանդերի (Զերեկ) միջոց երկու զինուորականները մինակ մնացին՝ Գորսիգայի գինւոյ շիշերը առջեւնին դրած՝ որուն վրայ խօսք բացին, և Հազարապետեան խնդրեց որ Գորսիգայի մէջ ամէն տեղէ աւելի առատ, ընտիր ա-

տեսակ տեսակ որս կայ: — Ծառ կենծ կայ հոն, զրուցեց Հարիւրապետը. բայց սովրելու է զանազանել զանոնք ընտանի խաղերէն, որ շատ կը նմանին անոնց. այս թէ ոչ՝ եթէ խոզ մը սպաննելու ըլլաս, չես կրնար խալըսիլ խոզարածներուն ձեռքէն: Վերէն վար զինեալ զալս կ'ելլեն անտառին մէջէն որ իրենք մաքի կը կոչեն, կենդանային զէնը կ'առնեն քեզմէ ու կը խնամեն վրադ: Կայ նաև մայրի ոչխար, այլանդակ կենդանի մը, որ աղէկ որս է, բայց որսալը դժուար: Եղջերու, այծեամն, փասիան, կաքաւ, և ուրիշ այնչափ երէ վայրի՝ որ համրանքը չկայ: Թէ որ հրացան կ'ուզես պարպել նէ, Հազարապետս, Գորսիկայի մէջ. Հոն ամէն տեսակ որսի վրայ կրնաս նշան առնել, սարեկէն սկըսեալ ինչուան մարդու վրայ:

Թէյի միջոցը՝ Հարիւրապետը նորէն զուարճացուց զօրավարը խոտորնակ վրէժխնդրութեան[1] մը պատմութեամ-

1. Խոտորնակ վրէժխնդրութիւն (Vendetta transversale) կը կոչեն Կորսիկացիք երբոր վրէժը թըշնամիին մերձաւոր կամ հեռաւոր ազգականէն կ'առնեն:

րը, որ աղջի պատմութենէն աւելի նոր-օրինակ էր. և անոր զարմանքը բարձրա-ցուց Գողգոթայի վրայ, երկրին վայրենի անկքը նկարագրելով՝ ամենևին ուրիշ աշխարհաց, բնակչաց նախատեսակ բար-քը, հեռաւորութիւնին ու նահապե-տական կենցաղներն: Եարքը ընծայ բրա-աղջկան պզտի դաշտին մը, գեղեցիկ ձե-ւով և աղուոր պղնձի կոխով՝ բայց ա-ւելի նշանաւոր անով, որ հռչակաւոր աւազակ մը ատեր էր զայն Եղիսի, ա-պահովցընելով որ չորս մարդու մար-մինը խաթուած էր: Այդպէս դաշին անցուց դանելկայ, գեղերը անկողնին քովի սայլին վրայ դրա, և պառա-կերէն առաջ երկու անգամ պառնե-նէն դուրս քաշեց: Հագարդայեան ալ մարդին մէջ երևակայեց որ վայրի ոչ-խար մը սպաններ էր և անոր կենդանու-ւոյն գինը կը պահանջէր իրմէ. սիրով կը վճարէր զայն նէմին, որովհետև հե-տաքրքրական կենդանի մըն էր՝ կինճին նման, եղջերու եղջիւրներով և վա-խանի պոչով:

Երկրորդ օրը նախաճաշիկի վրայ Հա-գարդայեան իր աղջկան՝

— Էլլիս կ'ըսէ թէ, զրուցեց, շատ զուարճալի է որսորդութիւնը Գորիլ-լայի մէջ. թէ որ հեռու չըլլար նէ, կ'ու-զէի տասնըհինգ օր մը հոն անցընել։

— Ինչու չէ, պատասխանեց Լիւդիա, ինչ արգելք կայ Գորիլա երթալու։ Դու կ'որսաս, ես կը ծրագրեմ՝. Ինչպէս կը փափաքիմ՝ յիշատակի տետրիս մէջ նկարել ան քաղաքին ուր Էլլիս ըսաւ թէ Պանդարապէ արդարութեան ատենը կ'եր-թայ եղեր ամեն տարի ըլլալու։

Թերևս այս առաջին անգամն էր որ հօրը փափագին դէմ կը ծառէր աղջի-կը։ Զարմացաւ հայրապետն ասանկ անկարծելի դէպքի մը վրայ. և խոհե-մաբար՝ սկսաւ դժուարութիւններ հա-նել՝ Լիւդիոյ ինքնահաւան կամքը դրդա-լու համար. երկրին վայրենութիւնը մէջ բերաւ, և թէ դժուարին էր կա-նանց ճանապարհորդել հոն. սակայն Լիւդիա պատասխանեց որ բանէ մը չէր վախնար, ձիով ճամբայ ընելէն աւելի ախորժելի բան չկար իրեն համար, բայց օդը մէջ պատկերն ալ դժուարձութիւն էր. ապա թէ ոչ կ'ըսէր՝ փառք Աստու կ'երթամ։ Գերմանացիները, ամէն ընդդի-

օրէնքը գոհ ընելու, և յաջող քամի ու հանդարտ ծով գուշակել։ Հաղորդապետն՝ աղջկան վրայ տալովը՝ խօսք գըրաւ նաւաստեացն հետ որ ուրիշ ճամբորդ չառնէ, և նաւը կղզւոյն ափունքներէն քաշցընէ, որպէս զի լերանց սա-քը կարենան փայլել։

Բ։

Ճամբորդութեան օրն հասաւ. ամէն բան ծրարուած ու առտուընէ նաւը դըրուած էր. և կօշէրի երեկոյեան մեղմ հովին առագաստները պիտի բանար։ Հաղորդապետը ժամանակին անցընելու համար՝ աղջկան հետ Գաւլիչյիեւ ճեմելիք ժամ կու գար. մէջ մ'ալ նաւաստեաց մօտեցաւ ու Հրամանն խնդրեց իր մէկ ազգականը նաւ առնելու, որ իր անդրանիկ որդւոյն կնքահօր հօրեղբօր թոռն էր, և հարկաւոր գործի համար ստիպուած ըլլալով հայրենիքը՝ Գալուպա դառնալու, ուրիշ պատրաստ նաւ չէր գտած։ — Ախորժելի երիտասարդ մ'է, կը զրուցէր Աւդէի նաւապետը,

զինուորական, արքունի պահապանաց հեծեալ գունդերուն պաշտօնակալ, և այսօրուան օրս հազարապետ ալ ե-ղած կ'ըլլար՝ թէ որ մէկալը դեռ կայսր ըլլար:

— Զինուորական է՛նէ, բաւ հազա-րապետը. և երբոր վրայ պիտի բերէր թէ կը համոզիմ, Լիւդիա անգղիերէն խօսքը կարեց.

— Հեծեալ գունդի պաշտօնակալ, դուցես (հայրը ձիաւոր գունդ ըլլալով Լիւդիա ուրիշ զինուորութիւնները կը քամահրէր). ո՛ գիտէ թէ անկիրթ մարդ մը չէ, ո՛ գիտէ թէ ծովը պիտի չբռնէ զինքն ու ճամբորդութեան փայեքը քթերնէն բերներնէն պիտի չհանէ:

Նաւապետը բան մը չէր գիտեր անգ-ղիերէն, բայց աղջկան շրթանց ծը-ռուածքէն բանն հասկընալով, սկսաւ ասելու 'ի տեղը գանգատ մը ազգական-նին վրայ. որուն մերձաւորանն այս երա որ կոկիկ մարդ էր, գորբորալի[1] ցեղէ էր, և թէ ամենևին նեղութիւն չէր տար իրենց, որովհետև անանկ անկիւն մը

1. Գօրբօրալ բառը զինուորական ասմունքով կը նշանակէ՝ հնգապետ:

կը տրուէր իրեն նաւուն մէջ, որ և ոչ աչքի զարնէր :

Հազարապետն ու Նեվիլ օրիորդը զարմացան անանկ ապգաստհմեր ըլլալուն Գորսիկայի մէջ, որ որդւոց որդի Հնգապետս ըլլան. և որոշեալ Հետեւակ զօրքի Հնգապետ էր, մօրքերնին գրին թէ անիկայ աղքատ մը ըլլայ՝ որ նաւապետը ողորմութեան Համար ձրի կը տանէր: Թէ որ պաշտօնական ըլլար, Հարկ էր Հետը խօսիլ՝ Հետն անցընել օրերնին, սակայն Հնգապետի մը խօսքը չէր ըլլար, բայց եթէ երբ իր խմբին գլուխ կեցած՝ ամենները Հրացաններուն վրայ՝ չուզած տեղը կը տանի զենքը :

— Ծովէն կը բռնուի՞ ազգականդ, Հարցուց օրիորդը պաղ կերպով մը:

— Բնաւ երբէք. ապստամբի պէս ամաք սիրտ ունի ծովու ու ցամաքի վրայ :

— Անանկ է նէ, կրնաս Հետդ տանիլ, ըսաւ Լիդիա:

— Կրնամ տանիլ, կրկնեց Հազարապետն ու նորէն սկսան ժուռ գալ :

Իրիկուան Հինգին Մադդէի նաւապետն եկաւ տանելու զիրենք: Նաւահանգիստին մէջ նաւապետին մակոյկին քովը

բարձրահասակ երիտասարդ մը սեւամն կապոյտ լօդիկ մը հագուած, զոր մէ-ջէն վար կոճկեր էր, դէմքին արեւէն ե-րած, աչքերը սեւ ու աշխոյժ. խօսք կեր-պը՝ համարձակ ու կրակոտ։ Բարեւ տուաւ հազարապետին և շնորհակալ եղաւ ըրած մարդասիրութեանը։

— Ուրախ եմ՝ որ ծառայութիւն մը կրցայ ընել, ըսաւ հազարապետը բա-րեկամական ձայնիւ և մաքուր անգղիերէն։

— Պահանջող մարդ չերեւար այդ անգղիացին, ըսաւ այն ատեն ցած ձայ-նիւ երիտասարդը նաւապետին։

Նաւապետը նշանով մը իմացուց որ անգղիացին խօսքերէն կը հասկընար և արտաքոյ կարգի մարդ մ'էր։ Երիտա-սարդը ժպտեցաւ, ձեռքը ճակտին վրայ դրաւ, որով կ'ուզէր իմացընել թէ Անգ-ղիացւոց բոլորին ըղեղն ալ ուրիշ կերպ շինուած է. և նաւապետին քովը նստե-լով՝ օրագրին կը նայէր։

— Շատ բարեձեւ են գաղղիացի զի-նուորք, ըսաւ հազարապետն աղէկ անգղիերէն. անոր համար դիւրաւ պաշ-տօնակալ կ'ըլլան։

Ետքը գաղղիերէն հարցուց երիտա-սարդին.

— Խնդրեմ, որ փաշային մէջ ծառայութիւն ըրած ես :

Անիկայ արմունկովը մէյ մը զարաւ նաւապետին, և ծիծաղը բռնելով պատասխանեց որ պահականոց զօրաց հեռաւոր պահապաններէն էր, և հիմա 7 գ թեթեւընթաց փաշային էր :

— Վաթերլուի պատերազմին մէջ գտնուեցա՞ր. բայց դեռ ծաղկահասակ ես :

— Միայն հոն պատերազմեր եմ:

— Եղկելի պատերազմ է անիկայ, զրուցեց անգղիացին :

Գօրսիկացին շրթունքները խածաւ :

— Հայր իմ, ըսաւ օրիորդն անգղիերէն, հարցուր թէ արդեօք Գօրսիկացիք շատ կը սիրե՞ն իրենց Պօնափարդը :

Երիտասարդն հազարապետին թարգմանութիւնը չսպասած, անգղիերէն պատասխան տուաւ.

— Գիտես, ազնիւ օրիորդ, որ մարդարէն իր երկրին մէջ պատիւ չունի ․․ մենք Գօրսիկացիքս թերեւս Գաղղիացւոցմէ քիչ կը սիրենք զՆափոլէոն : Իսկ ինծի գալով, թէպէտ ատենօք մեր ազգատոհմերնիս իրարու թշնամի եղած են,

ես կը սիրեմ զինքը ու կը զարմանամ վրան :

— Անգղիերէն կը խօսիս, ըսաւ Հազարապետը :

— Այսինքն կը կարդամ, ինչպէս որ կը լսէք :

Լիւզիա խնդաց եւ զարմացաւ Հազապետին մը կայսեր հետ ճշմարիտ ըլլալուն : Գործակալի արտաքոյ կարգի յատկութեանց մէկը սեպեց այս բանս, եւ միտքը դրաւ իր օրագրութեան մէջ անցընել :

— Արդեօք գերի՞ գացիր Անգղիա, հարցուց Հազարապետը :

— Ոչ երբէք. պզտիկուց Գաղղիա սորվեցայ ձեր լեզուն անգղիացի գերիէ մը :

Ետքը օրիորդին դառնալով,

— Մ'ադդէի նուաստակը զրուցեց ինծի, ըսաւ, որ իտալերէն կու գաք. անտարակոյս մաքուր թոսքաներէն կը խօսիս. վախեմ քիչ մը դժուարութիւն պիտի քաշես մեր գաւառական լեզուն հասկնալու :

— Աղջիկս իտալիոյ ամէն գաւառական լեզուները կը հասկնայ, պատաս-

խանեց հազարապետը . լեզուաց մաս-նաւոր յարմարութիւն ունի, ինծի չը-նմանիր : — Իսկ դու մէկ ամսուան ար-ձակուրդ առեր ես արդեօք :

— Ոչ . կէս թոշակով առժամանա-կեայ հանգիստ առին ինծի . անշուշտ Վաղէրուն մէջ պատերազմելս և Նա-պոլէոնի հայրենակից ըլլալս համար : Այսպէս և անարգանօք կը դառնամ հայ-րենիքս :

Ըսաւ և հառաչանօք երկինք նայե-ցաւ :

Հազարապետը գրպանէն ոսկի ստակ մը հանեց, և մատուըներուն մէջ խաղ-ցընելով, կը մտածէր թէ ինչպիսի քա-ղաքավարական խօսքով մը երիտասար-դին ձեռքը դնէր զայն :

— Ինծի ալ կէս թոշակ կազմեցին, ը-սաւ զուարթութեամբ . . . բայց դու քու կէս թոշակովդ ծխախոտ ալ չես կրնար գնել . սա ուրիկայ, հնգապետս :

Եւ կը ջանար զօրականացուոյն գոյ ձեռքը խօթել, որ նստակին եզերքը կռթընցուցած էր :

Երիտասարդը անմիջէն կարմրած՝ շրթունքները խածաւ, և կուրծքը վեր

անկերով՝ բարկութեան պատասխա-նելու վրայ էր. բայց յանկարծ կերպը փոխելով՝ բարձրաձայն ծիծաղեցաւ: Իսկ Հայրապետն անլին ձեռքը՝ ապ-շած մնաց:

— Հայրապետ, ըսաւ ան ատեն ե-րիտասարդը ծանրութեան, ներէ որ երկու խօսք ամ՝ քեզի: Առաջինը, որ ոչ երբէք գործածացայ մը ատակ ասս, որովհետև հայրենակիցներէս շատն ան-քաղաքավարութեան երես կը նե-տեն զայն. երկրորդ, ուրիշի աստիճանը գիտցիր ու անանկ կոչէ զինքը: Դու զիս հնգապետ կը կոչես, բայց ես տեղա-կալ սպայ եմ՝. մեծ տարբերութիւն մը չկայ, սակայն...

— Տեղակալ, ըսաւ անգղիացին, տե-ղակալ. Հայրանուագեան ըսաւ ինծի որ հնգապետ ես դու և հայրդ և բոլոր ազգատոհմդ:

Աս որ լսեց երիտասարդն, ետև ետև խնդալով անանկ կը ճաթէր խնդալէն, որ նաւապետն և երկու նաւաստիքն ալ սկսան սաստիկ ծիծաղիլ:

— Շատ զուարճալի է աս չինթու-թիւնը. հիմա հասկցայ լոր: Իրաւցը-

նէ իմ հայրս գաւառացի էին, բայց ու-
ղինուորական · 1100 թուականին կրդ-
դւոյն քանի մը գեղերը լեռնական իշ-
խաններու բռնութենէն ազատագ-
րելով, գլխաւորներ բնակեցին իրենց և
գաւառաց անուանեցին որ Հնդապետ-
ալ ըսել է: Անոնց ցեղերէն իշխանները
պատուաւոր են մեր կղզւոյն մէջ:

— Թողութիւն ըրէ, պարոն, բա-
հազարապետր. սխալմամբ պատճառն
իմացայ:

Ու ձեռքն երկնցուց անոր:

— Իմ հպարտութեանս պատիւն է,
բայց երախտաւորը ժպտելով և բարե-
կամաբար անդրադարձուցին ձեռքը սեղմե-
լով. մի վախեր՝ սիրտս չեմ դներ: Օրաս
ակըլլա Ռէշադիեա է իմ անունս, կէս թու-
չակով տեղաւոր ասոր. և եթէ ինչպէս
որ երկու ազնուր չամերդ անէնեցով
կը դաշնակեմ՝ սրտաբռութեան համար
Գորոնիցա կ'երթամ, շատ սիրով կ'ըն-
կերեմ քեզի մեր անտառաց և լեռնե-
րուն մէջ... բաւական է որ մոռցած
չըլլամ զանոնք, վրայ բերա հաս-
չելով:

Աս միջոցին նաւուն քովը հասան.

տեղակալը ձեռք տուաւ Լիւզիայի, ետ-քը օգնեց հազարապետին սանդուխէն վեր ելլելու։ Երբ Թամիմա շատ ամչցած ըլլալով սխալմանը վրայ, կը մտածէր ինչ կերպով մոռցնելու իր անքաղա-քավարութիւնն երախտաւորին՝ որ եր-կոտասաներորդ դարու մարդ էր. ուս-տի առանց հարցըներու ակնկանը, ընթ-րիքի հրաւիրեց զտեղակալը՝ նորէն նո-րէն ներումն խնդրելով եւ ձեռքը թօթ-վելով։ Լիւզիա քիչ մը ընկերուհիները ծը-ռեց, բայց որովհետեւ հիւրը ահաւէլի կերպ չունէր՝ ձայն չհանեց. մնտնուանդ որ կը սկսէր արտասանութեան շը-շորդ մը երեւակայել անոր վրան։

— Տեղակալդ ալլա Ռէպալիս, բա-նագնացին՝ ձեռքը Մալէրայի զին-ուոր լեգոն դաւաթ մը բռնած, Հայլե-նակներներէգ շատերը տեսայ եւ Սպա-նիա, որ հաշակաւոր արձակամարտ զօր-քէն (tirailleurs) էին։

— Այո, անոնցմէ շատերը հոն մը-նացին, պատասխանեց տեղակալը ծանր դէմքով։

— Ոչ երբէք պիտի մոռնամ՝ Վիտտը-րիայի պատերազմին մէջ զարմիկացի

Ջոկատի մը (bataillon) ցուցուցած կտ-րիճութիւնը : Կուրծքս կը յիշեցընէ ին-ծի զայն : Բոլոր օրը պարտէզներու մէջ ցանկերու ետև պահուըտած , զէնքեր-նիս պարպեր էին և շատ մարդ ու ձի մեռուցեր մեզմէ : Երբոր նահանջին որո-շուեցաւ , ամէնք միացան ու արագա-բար ետ կը քաշուէին : Մենք կը յուսայ-ինք դաշտի վրայ վրէժնիս առնել . բայց կտրիճները քառակուսի ձեւացած էին ու ճար չկար բաժնելու զանոնք : Քառակուսւոյն մէջ տեղը (դեռ աչքիս առջև կը տեսնամ) պաշտօնակալ մը պզտի սև ձիու մը վրայ հեծած էր . կայ-սերական արծուոյն քովը կեցած՝ սի-կարը կը ծխէր իբրև թէ արճանոյն ըն-կար : Երբեմն երբեմն ջոկատին երաժըշ-տութիւնը պատերազմական երգեր կը հնչեցընէր՝ իբրև թէ յաղթական գոչե-լու համար վրանիս :... Զինուորներէս երկու խումբ վրանին վազել տուի :... Ի՞նչ օգուտ . վիշապազօրքս (dragons) ժանտանակ քառակուսին մէջտեղէն ճեղ-քելու՝ կողմնակի գացին առաջ , եւքը կէս կլոր մը ընելով՝ խառնակած խան-գարած ետ դարձան և ձիերէն ոմանք

տասնմէկ ձիաւորի էին... և այն անի-ծած երաժշտութիւնը չէր դադրէր։ Եր-բոր Զուաւին վրայէն փարատեցաւ ծու-խը, Նորէն տեսայ նոյն պաշտօնակալն արծուենկիր դրօշակին քով ու սիկարը բերանը։ Նրան կարեցայ, և ես անգամ մ' ես գլուխ կեցայ վերջին յարձակման մը։ Թշնամւոյն հրացաններն սաստիկ պար-պելէն սպառած՝ չէին բաներ. բայց գինուորները վեց կարգի վրայ բոլորած՝ հրացանաց սուիններս մեր ձիերուն քը-թին բռներ էին. կարծես թէ պատ մըն էին։ Երբոր ես կը պոռայի, կը խրա-խուսէի միջապարզօրքս, կօշիկներուս կը զարնէի ձիուն փորին որ առաջ երթայ, թշնամի պաշտօնակալը սիկարը բեր-նէն հանեց և ձեռքովը իր գինուորներէն մէկուն ցըցուց զիս. անկանէս ան միջոցին անանկ ձայն մը եկաւ թէ ճերմակ գլխարկիս. իրաք ճերմակ փետուր մ'ու-նէի։ Ուրիշ բան չյիշեցի. որովհետև գըն-տակ մը անցաւ կուրծքէս։ — Ընտիր Զուաւ մ'էր 18դ. թեթևերընթաց վաշտին առաջին Զուաւը, Պ. անկլս Ռեպայթս. բոլորն ալ գործուղոցի, ինչպէս որ ես-քը բոլին խնձի։

— Այո, ըսաւ Օրսոյ՝ որուն աչքերը փայլատակեր էին այս պատմութեան միջոց. քաջութեամբ եւ քաշուեցան և արծիւնին հետերնին տարին. բայց կրա-բինէներուն երեքին երկուքը Վիդորիա դաշտին մէջ քուն կ՚ըլլան.

— Գիտեմս արդեօք ջոկատին հրամա-նատար պաշտօնակալին անունը.

— Իմ հայրս էր. այն միջոցին 18գ վաշտին մեծագոյն սպայ էր (Major), և նոյն օրուան տեղւոյ պատերազմին մէջ ցուցուցած արիութեանը համար հազարապետ անուանեցաւ.

— Հայրդ. կ՚երդնում՝ գլխուս՝ կարիճ զօրական էր. Ո՞ւր էր թէ տեսնայի զին-քը. տարակոյս չկայ որ կը ճանչնայի. Ո՞ղջ է հիմա.

— Ոչ, պատասխանեց երիտասարդը թեթեւ մի գոյնը նետելով.

— Վաթերլոյն գտնուեցաւ.

— Այո, բայց պատերազմի դաշտին վրայ մեռնելու բաղդը չունեցաւ... Կոր-սիկայի մէջ մեռաւ երկու տարի ա-ռաջ.... Ո՜հ, ինչ աղուոր է աս ծովը. տասը տարիէ 'ի վեր Միջերկրականը չեմ տեսած. — Միջերկրականին Ովկիա-

նաւէն աւելի գեղեցիկ չերեւար աչքիդ, ազնիւ օրերդ:

— Ծով կապոյտ է, ըսաւ Լեւոնիա... և ալիքը վեհութիւն չունին:

— Վայրենի գեղեցկութիւն կը սիրես կարծեմ. անանկ է նէ Գորսիգայի պիտի հաւնիս:

— Աղջիկս ամէն սովորականէ դուրս բան կը սիրէ, գրուցեց Հազարապետը. անոր համար Իտալիա անախորժ երեւցաւ իրեն:

— Ես Իտալիոյ մէջ Բիզա քաղաքը միայն կը ճանչնամ, ըսաւ Օլգա, ուր քիչ մը ատեն դպրոց գացի. բայց զարմացած եմ գերեզմանատանցոյն (Գամ-պոյ–Սանդոյ), մեծ եկեղեցւոյն, ծռա-զանգակատանը, բայց մանաւանդ գերեզմանատանցոյն վրայ. անտարակոյս կը յիշէք Օրկանեայ պատկերահանին Մահուան նկարը. անանկ միտքս մնացած է ինչուան հիմա, որ կրնամ ծրագրել անոյն 'ի տեղը:

Լեւոնիա վախնալով որ երիտասարդն Իտալիոյ վրայ դամբանները կ՚երկնցընէ,

— Ծով աղուոր է, ըսաւ յօրանջելով: — Երբոր նաւութիւն կ՚ընես, հայր,

գլուխս քիչ մը կը ցաւի, վար պիտի իջնամ։

Հօրը ճակատը պաղած, գլխով բարեւ տուաւ Օրայի եւ վար իջաւ։ Այն ատեն Հայրապետեան եւ Օրայ ստորագրութեան եւ պատերազմի վրայ խօսեցան։ Իրարու խօսքերէն իմացան որ Վաղերջուի մէջ իրարու գիտցող են եղեր, եւ թէ անշուշտ շատ մը գիտակներ իրարու պարտած են. ատով սկսան իրարու հետ կապուիլ։ Նաբոլէոնի, Ուէլլինկթընի եւ Պլուխէրի վրայ պատմուածներ ըրին. երկքը մէկտեղ այծեամն, կինճ ու վայրի ոչխար որսացին։ Երրորդ գիշերը շատ առաջ գինւոյ եւ կոնեակի վերջին շիշը պարպուեցաւ, Հայրապետեան նորէն տեղակալին ձեռքը սեղմեց եւ բարի գիշեր մաղթեց. երկքը իրարմէ բաժնուեցան եւ պառկելու գացին։

Գ.

Աղուոր գիշեր մ՚էր, լուսինն ալեաց հետ կը խաղար, նաւն ալ անոյշ քամիէ մը մղուած կը սահէր ծովուն վրայ։ Միգիս քուն չունէր, բայց՝ գաղափարացի

պաշտօնակային պատճառաւ չէր վայ-
լած ինչուան այն ատեն այն քաղցրա-
խորժ զգացմունքը, զոր ծովուն տեսքն
ու լուսնի արծաթափայլ ճառագայթ-
ները կ'ազդեն այն անձն մարդու վրայ,
որուն սրտին մէջ բանաստեղծութեան
պզտիկ սերմ մը կայ։ Վերջապէս յուսալով
որ պաշտօնակալը քուն եղած է, ելայ
անկողնէն, մուշտակ առաւ վրան, սենե-
կապան աղախինն արթնցուց ու հետը
նաւուն վրան ելաւ։ Մարդ չկար վերը՝
բայց 'ի նաւաստիէ մը, որ ղեկը կը կա-
ռավարէր, և Գորսիգայի լեզուով ողբա-
կան երգ մը կ'երգէր. Թէպէտ վայրենի
և միակերպ եղանակ մ'էր, բայց գիշե-
րային լռութեան մէջէն քաղցր կը հըն-
չէր։ Դժբաղդաբար Լիւդիա բոլորովին
չէր հասկընար նաւաստիին երգածը.
հասարակ ազգերու մէջ նշանաւոր ի-
մաստ մը յանկարծ դուրս կը ցատքէր
և օրիորդին հետաքրքրութիւնը կը զար-
թուցանէր. բայց գաւառական բառեր
վրայ հասածին պէս՝ իմաստը կը կոր-
սնցընէր։ Ի վերայ այսր ամենայնի ի-
մացաւ որ երգը պատմութեան մը վրայ
էր. մէյ մը անէծք կը լսէր սպաննողաց

դէմ, մէյ մը վրէժխնդրութեան սպառնալիք, մերթ ալ մեռելոյն դամբանը: Քանի մը տող կրցայ միայն պահել, զոր հոս կը թարգմանենք.

«... Ոչ թնդանօթը, ոչ հրացանի սուինները — կրցան այլայլել իր ճակատը, — որ անանկ զուարթ ու պայծառ էր պատերազմի դաշտին վրայ. — Ինչպէս անտառուան գիշեր մը: — Բազէ էր՝ բարեկամ արծուոյն, — աւազի մեղր՝ իր բարեկամաց, — իսկ թշնամեաց՝ ծով բարկացայտ: — Բարձր քան զերկինս, — քաղցրագոյն քան զլուսին: — Այն որ բնաւ սպասեցընել չտուաւ Գաղղիոյ թշնամիքը, — իրեն հայրենակից մարդասպաններ — ետեւէն զարկին զինքը, — ինչպէս Վիդդոլոյ սպաննեց զՍամբիերոյ Գօրսայ: — Ոչ երբեք կրնային համարձակիլ առջեւն ելլել: — ... Անկողնիս առջեւ պատին վրայ կախեցէք — պատուոյ խաչս, զոր արդիւնքովս ստացած եմ: — Ժապաւէնը կարմրցած է. — բայց շապիկս ալ աւելի: — Որդւոյս, որ օտար երկիր է — որդւոյս պահեցէք խաչս ու արիւնոտ շապիկս: — Վրան երկու ծակ կը տեսնէ: — Իւրաքանչիւր ծակին տեղ՝ ծակ բանալու է ուրիշ շապկի մը վրայ: — Բայց անով վրէժխնդրութիւնը լցուած կ՚ըլլայ: — Եւ այն ձեռքը կը պահանջեմ՝ որ պարպեց հրացանը, — այն աչքն որ նշան առաւ, — այն սիրտն որ մտածեց...»

Յանկարծակի կանգ առաւ Նաւաստին: — Ինչու համար չես շարունակեր, բարեկամ՝, հարցուց Նէվիլ օրիորդը:

Նաւաստին գլխով նշան ըրաւ ու ցը-ցուց զՕրայ որ սենեակէն վեր կ'ելլէր լուսնին գեղեցկութիւնը վայելելու :

— Լմընցուր ողբդ, ըսաւ Լեւոնիա. շատ ախորժեցայ :

Նաւաստին ծռեցաւ ու օրիորդին ա-կանջէն վար ըսաւ. Ես շինկեցգու չեմ՝ տար մարդու մը :

— Ի՞նչ ըսիր .. շիմ ...

Նաւաստին պատասխանի տեղ սկը-սաւ սուլել :

Այն միջոցին Օրայ վրայ հասնելով

— Բռնեցի զքեզ, ըսաւ օրիորդին. մեր Միջերկրականին զմայլեր կը նայիս : Խոստովանէ որ ուրիշ տեղ չգտնուիր աս լուսինը :

— Եւ ոչ իսկ կը նայէի անոր. խելքս միտքս Գորսիգայի լեռներուն վրայ էր. աս նաւաստին որ կը տեսնես՝ սրտաշարժ տաղ մը կ'երգէր, բայց ամենէն աղուոր կտորին դադրեցուց :

Նաւաստին ծռեցաւ իբրև թէ կող-մնացուցին վրայ աւելի աղէկ նայի և ակնով մը նշելով օրիորդին մուշտակը քաշեց : Անտարակոյս կ'ուզէր իմացը-նել որ այդ երգը Օրայի առջև չէր կըր-նար երգել :

— Ի՞նչ էր երգածդ, Պօղոս Ֆրանչէ, հարցուց Օրսոյ. պալլաղամ մըն է չէ նէ վոչէրոյ[1]: Լիւդիա հասկըցեր է երգածդ և կ՚ուզէ վերջը լսել:

— Մոռցայ գնաց, Օրս՚ Անտոն, պատասխանեց նաւաստին: Ես մէկէն սկըսայ երգ մը երգել Աստուածածնայ՝ որչափ ձայն ունէր նէ դուրս ձգելով:

Լիւդիա շատ ուշադրութիւն չըրաւ նոր երգին, և ալ նեղը չխօթեց երգեցողը. միայն միտքը դրաւ որ վերջը բանին ինչ ըլլալն իմանայ: Բայց իր աղախինը, որ թէպէտ փլորէնտացի՝ ինքն ալ աղէկ չէր հասկընար Կորսիկայի լեզուն, չկարենալով յաղթել հետաքըրքրութեանը՝ հարցուց Օրսոյի թէ ինչ կ՚ուզէ ըսել ռիմպէգգօ տալ մէկու մը:

— Ռիմպէգգօ, ըսաւ Օրսոյ. անէծք

1. Երբոր մէկը կը մեռնի Կորսիկայի մէջ, մանաւանդ երբոր սպաննուած է, մարմինը սեղանի մը վրայ կը դնեն, և նոյն տան կնիկները, չէ նէ բարեկամ կամ նոյն իսկ օտար կնիկներէ անոնք որ բանաստեղծական խառնուածք ունին, յանկարծախօս ողբական ոտանաւորներ կ՚արտասանեն իրենց գաւառական լեզուովը ներկայ եղողներուն առջին: Այս ողբերը՝ կղզւոյն արևելեան ափանց վրայ վոչէրօ կը կոչուին, իսկ արևմտեան ափանց՝ պալլաթա:

ասկէ մեծ նախատինք չկրնար ըլլալ կորսիկացւոյ մը . երեսը զարնել մին է որ վրէժխնդրութիւն չէ առած : Ո՛վ ձեզի ռիմպէգգօի վրայ խօսք բացաւ :

Ան ատեն առաջարկեց Լիւդիա իրեն պատասխան տալու թէ

— Նաւապետն երէկ Մարսէյլը գործածեց այս բառը :

Երբոր ղեկավարին դառնալով՝ հարցուց թէ երբ նաւը նաւահանգիստ պիտի հասնէր :

— Վաղը չէ մէկալ օր, թէ որ քամին չարանակէ :

— Երանի թէ Այաչչիոյի դիմացն ըլլայինք . շատ նեղութիւն կու տայ նաւն ինծի :

Եւ սենեկապան աղախնոյն թեւը մըտած՝ սկսաւ քալել նաւուն վրայ . Օրսօ ղեկին քով անշարժ կեցաւ, մտածելով թէ արդեօք հեռանալի՞ն քալէ՞, չէ նէ դադրեցընէ խօսակցութիւնը, անկից Լիւդիա շատ համ՝ չէր առներ :

Քիչ ետքը Լիւդիա վար իջաւ աղախնոյն հետ . ատոր վրայ՝ Օրսօ ալ իր քնակարանը քաշուեցաւ : Ան ատեն սենեկապան աղախինը վեր ելաւ, և շատ մը

հարցմունքներ ընելէն վերջը Նաւա-ստին, գնաց խնդրեց Նէվիլ օրիորդին որ պատրաստուել տէլլա Ռէպպիա քաղա-քապետին վրայ չինուած էր, որ Օրսոյի հայրն էր և երկու տարի առաջ սպան-նուեր էր: Նաւաստին կը հաստատէր թէ անշուշտ վրէժխնդրութեան համար Օրսոյ Գորսիկա կ'երթար, և թէ քիչ ատենէն Բիէդրանա գեղին մէջ նոր մորթուած միս պիտի տեսնուէր: Այս խօսակցութեան միտքն այն էր՝ որ Օր-սոյ գիտութիւն ունէր երկու իրեք հոգի սպաննելու, որոնց վրայ կասկած կար, և թէպէտ դատաստանի կան-չուած էին անոնք, բայց ձեռն ալէս ար-դար դուրս ելեր էին, որովհետև իրենց կողմն ունեցեր էին դատաւորները, փաստաբանները, քաղաքական ու պահպանութեան գինուորները: — Ար-դարութիւն չկայ Գորսիկայի մէջ, ը-սեր էր Նաւաստին, և ես աւելի բանի տեղ կը դնեմ աղէկ հրացան մը՝ քան թէ արքունական ատենի խորհրդական մը: Երբոր մարդ թշնամի մը ունի, պէտք է իրեք Տ գրէն[1] մէկն ընտրէ:

1 · Ազգային բացատրութիւն մըն է, որ կը նը-

Այս հեռաքննական տեղեկութիւնները շատ փոխեցին Լիտիա օրիորդին կարծիքը տէլլա Ռէպպիա պաշտօնակալին վրայ։ Առաջ չէր հաւնած անոր համարձակախօս ու զուարթ բարուցը, իսկ հիմա կատարելութիւն մը կը սեպէր. որովհետեւ անով կը ծածկէր Օրսոյ կարիճ սրտին մէջ իր խորին զգացմունքները։ Անկէ ետքը տեսակ մը Ֆիէսքոյ[1] կ'երեւար օրիորդին աչքին, որ իր թեթեւամիտ կերպին տակ մեծամեծ մտածութիւններ կը ծածկէր։ Եւ սկսաւ դիտել որ կրթութիւն ունեցող անձն էր, փառաւոր կերպ գիտէր, և հասակի ու կերպարանքի վայելչութեամբ ալ արհամարհելի չէր։

Երկրորդ օրն երկայն ատեն հետը խօսեցաւ, և ուշը գրաւեց անոր խօսակցութիւնը։ Բազմաթիւ հարցմունքներ ըրաւ անոր հայրենեաց վրայ, և Օրսոյ աղէկ կը նկարագրէր զանիկայ։ Օրսոյ

շինուած schiopetto (հրացան), stiletto (դանակ) և strada (փողոց) բառերը։

1. Ֆիէսքոյ Ճենովացի ազնուական մըն էր ԺԶ դարուն, որ դաւաճանութիւն մը նիւթեց 1547 տարւոյն քաղաքին տիրող Տօրեա ցեղին դէմ։

տղայութենէ 'ի վեր հեռացած ըլլալով Գորսիկայէ՝ դպրոց ետքը զինուորական վարժոց երթալու համար, բանաստեղծական գոյներով նկարուած էր անիկայ մտքին մէջ. և հնամենի լերանց, անտառներուն և բնակչաց նախնական սովորութեանց վրայ խօսելու ատեն՝ աշխոյժը կը վառէր: Դիւրին է մակաբերելն որ վրէժխնդրութեան բառը քանի մը անգամ իր պատմութեանց մէջ խառնուեցաւ. որովհետև անկարելի է Գորսիկայեաց վրայ խօսիլ ու իրենց այս աշխարհածանօթ կրքին վրայ յիշատակութիւն չընել: Նեվիլ օրիորդը զարմացաւ տեսնելով որ Օրսոյ ընդհանուր կերպով մը կը պախարակէր իր հայրենակցաց անհաշտ ատելութիւնները: Ամէն տեղէ աւելի մեր երկիրը մարդասպանութիւն կ'ըլլայ, կ'ըսէր. բայց միշտ մեծ պատճառէ մը կը մղուին Գորսիկացիք այս անօրէնութեան: Մենք շատ մարդասպան ունինք. իսկ գող՝ բնաւ և ոչ մէկ մը:

Երբոր Օրսոյ վրէժխնդրութեան և ըսպանութեան բառերը կ'արտաբերէր, Լիւդիա ուշադրութեամբ մը երեսը կը

նայէր, բայց ամենևին այլայլութեան նշան մը չէր տեսնար կերպարանքին վրայ։ Սակայն միայն գրած ըլլալով որ պաշտօնակալը կարող էր ո և իցէ աչքի ինքզինքը չյայտնել՝ բայց ՚ի երեսներէն, հաստատուեցաւ կարծիքին մէջ թէ ռէյիս Սէպպիա հազարապետին սառուերը քիչ ատենէն արեան ծարաւը պիտի յագեցընէր։

Քիչ ատենէն սկսաւ Գօրախզան երեւալ. Նաւապետը ծովախանց գլխաւոր տեղեաց անունները կ՚ըսէր, որոնց թէպէտ ամէնքն անծանօթ էին Լիւզիին, բայց կ՚ախորժէր լսել. խօսք շատ ձանձրանալի է այն տեսարանն որուն անունը չես գիտեր։ Երբեմն հազարապետին դիտակովն ափանց վրայ կղզեցիք կը տեսնուէին՝ ու չուխայ հագած, ձեռքերնին երկայն հրացան, որ պզտի ձիերու վրայ հեծած՝ զառիվայրերու վրայ կը վազցընէին։ Լիւզիա անոնցմէ ամէն մէկն աւազակ մը կը համարէր, կամ հօրը մահուան վրէժխնդիր որդի մը. բայց Օրսոյ կ՚ըսէր որ անոնք գեղին բնակիչներէն էին և իրենց գործոց համար ճամբայ կ՚ընէին. և թէ հարկի համար

չէր զէնք գործածելնին՝ հապա վայելչութեան համար. ինչպէս որ ժամանակիս թեթեւսոլիկները զարդարուն գաւազան ձեռուընին առած դուրս կ'ելլեն։

Երեքօրեայ ճանապարհորդութենէ ետքը՝ Յանիկինէր կըզզուին առջին հասա՛նաւը, եւ Այաշշիյի ծովին պանչելի ափերը ճանապարհորդաց աչքին առջեւ բացուեցան։ Իրաւամբք Նէապոլւոյ խորշին կը նմանցնէին զանիկայ. այն մէջոցին որ կօլէջը նաւահանգիստ կը մտնէր, անտառի մը այրման ծուխը ծառայելով Ձիրաւդա հրուանդանին վրայ, զվէսուվ կը յիշեցնէր եւ նմանութիւնը կ'աւելցնէր։ Այս նմանութիւնը բոլորովին կատարեալ ընելու համար՝ պէտք էր որ Անատոլուայ բանակ մը Նէապոլսոյ շրջակայքը զարդարէին. Այաշշիյի մերձակայքը մեռեալ եւ անապատ են։ փոխանակ այն վայելուչ բնակարաններուն որ Գասաղէլլամարէէն մինչեւ ցՄիզէնոյ հրուանդանին ամէն տեղ սփռուած են, Այաշշիյի ծովին չորս կողմը ուրիշ բան չեն տեսներ՝ բայց եթէ սխուր անտառներ, եւ անոնց ետեւը՝ լերկ լեռներ. ամայա-

տուն մը չկայ, և ոչ իսկ բնակարան մը. միայն քաղաքը բոլորող բլրոց վրայ սա-ղիս անդին քանի մը չէնքի սպիտակու-թիւնը կանաչութեան մէջէն դուրս կը ցայտէ, որ մեռելոց հանգստեան մա-տուռներ կամ գերեզմանք են։ Միով բանիւ՝ այս տեսարանին գեղեցկութիւ-նը ծանր է և տխուր։

Քաղաքին տեսքը, մանաւանդ այն ժամանակը, կ'աւելցընէր շրջակայից միայնութեան ազդած տպաւորութիւ-նը. փողոցներու մէջ կենդանութիւն չկայ, որովհետև քանի մը պարապորդ-ներ միայն կը քալեն և միշտ նոյներն են. կանայք չեն երևար, բայց 'ի սակա-ւաթիւ գեղջուկներէ որ բերքերնին ծա-խելու կու գան։ Բարձր խօսելու, խըն-դալու, երգելու ձայներ չեն լսուիր, ինչ-պէս խոշոր քաղաքաց մէջ կը լսուին։ Երբեմն ճեմելեաց ծառի մը տակ տա-սը տասուերկու գինեալ գեղացիներ թուղթ կը խաղան կամ ուրիշներուն խաղալը կը դիտեն։ Բնաւ չեն պո-ռար, վէճ չեն ըներ. երբոր խաղը աւր-նայ, ատրճանակի պայթումներու ձայներ կը լսուին, որ միշտ նախընթաց են

սպառնալեաց : Գործիգայիք 'ի բնութենէ ծանր և լուռ են: Երեկոյեան զօվութիւնը վայլելու համար քիչ մարդիկ կան որ դուրս կ'ելլեն. բայց կրկէսին մէջ ժուռ եկողները գրեթէ բոլորն ալ օտարականք են: Եզզեցիք տանտերնուն դրանց առջև կը կենան. կարծես թէ դարանի նստած են, ինչպէս բազէ մը իր բոյնին վրայ:

Գ.

Մկրտիչ Նարօլէանի ծնած տունն այց ելլելէն և սենեակը պատող ներկեալ թղթէն քիչ մը ձեռք ձգելէն վերջը, Գործիգա համերքուն երկրորդ օրը խորին տխրութեամբ պաշարուեցաւ. ինչպէս բնականապէս կը պատահի այն ամէն օտարականաց, որ անընկերասէր երկիր մը երթալով՝ միայնութեան մէջ կը մնան: Շատ զղջաց իր յանկարծական որոշմանը վրայ. բայց մէկէն հեռանալն ալ անկից՝ իր պատույն կը դպչէր. ուստի համբերութեան աչքն առաւ և մնացը դրաւ կրցածին չափ բազմանել ժամանակը: Այցելուի վեհանձն

դիտաւորութեամբ՝ վրձիններն ու գոյները պատրաստեց, և ծոցին տակերէն մէկ քանին ծրարեց. նկարեց նաև արևէն ելած գեղայցւոյ մը դէմքը, որ անխախանձառ էր, այլխառակ մօրուք և դէմքէն վայրագութիւն ու անզգամութիւնը չափել որ ուզենայիր՝ նմանը չէր գտնուէր: Այսչափն ալ չբաւեց զինքը զուարճացընելու. ուստի մտքը գրաւառացւոց ցեղէն իշխողին հոգին բերանը բերելու. ասիկայ դժուարին բան մը չէր, որովհետև Օրսոյի հօրը չէր երթել գեղը տեսնելու և Այաչչոյի բնակութիւնը կ'անարժէր, թէպէտ մարդու հետ չէր տեսնուէր: Թող որ Լիզիա ազնուական փախճան մը ունէր մտքին մէջ. ցաւերով երկաստարդին վրայ՝ կ'ուզէր կրթել քաղաքականացընել այդ լեռնային արջը[1], և մտքէն վերցընել այն մեծահաղուշակ դիտաւորութիւններն՝ որոնցմով լեցուած կղզին եկած էր:

Հետեւեալ կերպով կ'անցընէին մեր ճանապարհորդին օրերը. առաւօտ՝

1. Օրսոյ անունն իտալերէն արջ կը նշանակէ:

հազարապետն ու Օրայ որսի կ'երթային. Լեւոնիա կը ծրագրէր, կամ կը թըղթակցէր իր բարեկամուհեաց հետ՝ որպէս զի Այաշխոյէն թուղթ գրած ըլլայ: Իրիկուան ժամը վեցին որսորդները կու գային լցեալ աւարաւ. կերակրոյ կը նստէին. երբ Լեւոնիա կ'երգէր, հազարապետը քուն կ'ըլլար, և երկու երիտասարդքն մինչուան ուշ ատեն կը խօսակցէին:

Անցայլոյ պատճառաւ նեղիլ հազարապետը բռնադատուեցաւ այց ելելու քաղաքապետին, որ իր պաշտօնէն ձանձրացած ըլլալով (ինչպէս իր պաշտօնակիցներէն շատերն ալ) առանձնացաւ հարուստ անգղիացւոյ մը գալստեանը վրայ, որ ընկերութեանց մէջ մտած մարդ էր և գեղեցիկ աղջիկ մը ունէր: Այս պատճառաւ շատ սիրով և անհամբեր քաղաքավարական խօսքերով ընդունեցաւ քաղաքապետին գնեվին. և քիչ օր ետքը փոխադարձ այցելութեան գնաց: Հազարապետը կերակրէն նոր ելած էր, և բազմոցի մը վրայ երկնցած՝ կը մրափէր. աղջիկը կարդացած գաշնակի մը առջև նստած կ'եր-

գէր, Օրայ ալ երաժշտութեան ստուերին թղթերը կը դարձնէր : Երբոր խմաց տրուեցաւ քաղաքապետին պալատը, պաշտօնէին ձայնը կորեցաւ, Հազարապետն ալ եւս աչքերը չփելով և ծանօթացուց քաղաքապետն իր աղջըկանը. ետքը

— Անտարակոյս հարկ չկայ ծանօթացընելու տէկըս Ռէպըկիս Հազարապետին որդին, բայց քաղաքապետին. Ճանչնալու եւ գիտեր :

— Այդ պարոնը տէկըս Ռէպըկիս Հազարապետին որդին է, հարցուց քաղաքապետը՝ քիչ մը շփոթած կերպով :

— Այո, բայց Օրայ :

— Հայրդ Ճանչնալու պատիւն ունեցած եմ :

Քիչ ատենէն խօսակցութեան առաջակայն ոճերը հատան. Հազարապետն տեղյ կը յօրանջէր. իսկ Օրայ իրեն պատասխանէր՝ չէր ուզեր իշխանութեան պաշտօնէին հետ խօսիլ. Լիզլիա միայն էր խօսողը : Քաղաքապետն ալ իրեն կողմանէ կը ջանայր խօսակցութեան նիւթ բանալու, և ախորժով կը խօսէր աղջկան հետ Բարիզը և Լոնտրայի

մեծամեծ ընկերութեանց վրայ։ Միանգամայն մերթ ընդ մերթ մասնաւոր հետաքրքրութեամբ մը կը դիտէր զՕրսօ. և վերջապէս

— Գաղղիոյ մէջ ծանօթացա՞ր տէլլա Ռէպպիա պաշտօնակալին հետ, հարցուց աղջըկան։

Լիդիա պատասխանեց որ Գորսիկայի ճամբուն վրայ ճանչցուեր էին նաւուն մէջ։

— Կոկիկ երիտասարդ մ'է, ըսաւ քաղաքավար ցած ձայնով։ Ետքը աւելի ցածցընելով ձայնը՝ Գիտե՞ս արդէօք, հարցուց, ինչ դիտաւորութեամբ Գորսիկա եկած է։

Լիդիա պատասխանեց վսեմ կերպով մը. — Ես չեմ հարցուցած իրեն. կ'ուզես նէ դու հարցուր։

Քաղաքավարը լուռ կեցաւ. բայց քիչ ետքը երբոր տեսաւ որ Օրսօ քանի մը անգղիարէն խօսք ըսաւ հազարապետին, — կարծեմ, պարոն, ըսաւ, շատ ճանապարհորդութիւն ըրած ես. անտարակոյս մոռցած կ'ըլլաս Գորսիկան ... ու իր սովորութիւնները։

— Իրօք շատ դեռահասակ էի դուրս գացած միջոցս։

— Բանակէ՞ն եկած ես :

— Կէս թոշակով եմ :

— Մինչուշա շատ տարի Գաղղիական բանակին մէջ կեցած ըլլալով, բոլորովին Գաղղիացի դարձած պիտի ըլլաս : Այս եարի խօսքերը լեցուն բերնով զրուցեց :

Գորսիդացիք շատ չե՛ն ախորժեր լսել որ Գաղղիոյ մաս են . կ'ուզեն մասնաւոր ժողովուրդ մը սեպուիլ, և իրօք իրենց յատկութեամբք շատ կը զանազանին Գաղղիացւոցմէ : Օրսոյ անհաճելով այս խօսքին վրայ, Հարցուց քաղաքապետին .

— Հա՞րկ է արդեօք որ Գորսիդացի մը պատուաւոր մարդ ըլլալու համար Գաղղիոյ բանակին մէջ ծառայէ :

— Ոչ, բնաւ հարկաւոր չէ . իմ խօսքս երկրիս քանի մը սովորութեանց վրայ էր, որոնցմէ ոմանք տէրութեան պաշտօնէի մը աչքին գէշ կը դառնան : — Սովորութեանց բանին վրայ մասնաւոր ոյժ մը տուաւ քաղաքապետը և կերպարանքին վրայ կրցածին չափ ծանրութիւն նկարեց : Յետոյ անմիջապէս խոստմունք առնելով Սիգիայէն որ

դայ իր կնոջ այցելութեանն, ելաւ գնաց:

Երբոր դուրս ելաւ, — Գորտիկա պէտք էր եկած ըլլայի, գրուցեց Լիւդիա, քաղաքապետաց ինչպիսի անձինք ըլլան իմանալու համար: Այս քաղաքապետն ըստ բնականին ախորժելի է:

— Ես անանկ չեմ՝ կարծեր, պատասխանեց Օրսոյ. և իր խորհրդաւոր ու ճառամիտխօս կերպը անախորժ կ'երևայ ինծի:

Հազարապետը թմրեր անզգայեր էր. Լիւդիա դէպ 'ի հօրը կողմը մէյ մը աչք տալէն վերջը՝ ցած ձայնով ըսաւ. — Ինծի կ'երևայ որ ըսածիդ չափ խորհրդաւոր չեն իր խօսքերը, որովհետև հասկըցայ ըսածները:

— Դու շատ թափանցող ես, պատասխանեց Օրսոյ. բայց այս բանիս մէջ քու մտածութիւնդ կու տաս քաղաքապետին խօսքին:

— Կ'ուզե՞ս փորձով մը իմացընեմ քեզի իմ թափանցողութիւնս: Ես քիչ մը վհկութիւն գիտեմ, և երկու անգամ տեսած մարդուս մտքէն անցածը կը հասկընամ:

— Կը վախցընես զիս ։ Թէ որ մարդկանց մտածութիւնները ճանչնայիր, չեմ գիտեր թէ արդեօք ուրախ կ'ըլլայիր ես չէ՞ նէ տրտում....

— Քանի մը օրուան ճանչուորութիւն է մերը, պարոն, բաւ Լիւդիա կարմիելով մը . բայց ծովու վրայ և բարբարոս երկիրներու մէջ (յուսամ կը ներես այս բացատրութեանս) բարեկամութիւն աւելի շուտով կը հաստատուի քան ուրիշ տեղուանք... Անոր համար մի զարմանար թէ որ իբրև բարեկամ մըտերմութեամբ անանկ բաներու վրայ խօսիմ, որ օտարի մը բերնէն պէտք չէ ելլէն ։

— Օտար մի ըսեր . բարեկամի անունն ախորժելի է ինծի ։

— Շատ աղէկ . ուրեմն գիտցիր որ առանց գաղանիքներդ իմանալ ջանալու՝ գիտեմ՝ անոնց մէկ մասը, և տխուր եմ անոնց վրայ ։ Գիտեմ ընտանեացդ հանդիպած ձախորդութիւնը . ուրիշ կողմանէ ալ ականջս շատ բան հասաւ հայրենակցացդ վրէժխնդիր բնաւորութեանն և վրէժ առնելու կերպին վրայ... Քաղաքավարութեան այս բանին անհնարինութիւն չէր ընէր ։

— Ի՞նչ. կըսե՞ս անանկ բան կարծել..
Եւ Օրայի գոյնը նետեց մեռելոյ մը պէս։

— Չէ, բայց Լիւդիս խօսքը բերնէն առնելով. գիտեմ՝ որ պատուաւոր ազնուականի մըն ես. և դու ինքն ըսիր ինծի՝ որ ալ Գորսիգայի մէջ հասարակ աստիճանի մարդկանց մէջ միայն մնացած է վրէժխնդրութիւնը...

— Կը կարծե՞ս որ մարդասպան կարենամ՝ ըլլալ։

— Խօսելէս իմացիր որ առարկայ չունիմ՝ վրադ. և խօսելուս պատճառն է (բայց աչքերդ վար առնելով) իմացընել քեզի որ թէպէտ հայրենիքդ դարձած ես և բարբարոսական նախապաշարմունքներէ պաշարուած, բայց կայ մէկը որ կարող կը կարծէ զքեզ դէմ կենալու անոնց։ — Եւ ոտքի վրայ ելլելով, Թողունք, բայց, այս փուճ խօսքերը, որ գլուխս կը ցաւցընեն. արդէն ժամանակն ալ ուշ է։ Յուսամ՝ որ նեղացած չես։ Գիշեր բարի, անգղիացւոյ կերպով։ Ըսաւ և ձեռքն երկնցուց անոր։

Օրսոյ սկսեց զայն արժանացնել ծանրութեամբ մը։

— Գիտցի՛ր, բաւ, ազնիւ օրիորդ, որ երբեմն մեր երկրին բնածին աղդումը կը զարթնու յիս. երբեմն երբոր խեղճ հօրս վրայ կը մտածեմ, ... ահաւոր մտածութիւններ կը պաշարեն զիս ։ Բայց դու ազատեցիր զիս անոնց ամենէն. մեծապէս շնորհակալ եմ ։

Կ'ուզէր շարունակել. բայց Լիւդիա ձեռքէն թէյի գդալ մը վար իյնալով, հազարապետն արթնցաւ ։

— Տէլլա Ռէպպիա, վաղը ժամը հինգին որսի կ'երթանք. մի՛ պակսիր ժամանակին ։

— Մի՛ տարակուսիր ։

Ե

Երկրորդ օրը, Նէվիլ օրիորդն, որ սենեկապան աղախնոյն հետ ծովուն ափունքը շրջագայութեան ելած էր, որսորդաց դարձէն քիչ մը առաջ պանդոկը կը դառնար. մէյ մ՚ ալ տեսաւ որ դեռահասակ օրիորդ մը, սեւեր հագած, ուժով մտրուկի մը վրայ հեծած, քաղաքը կը մտնար. հետը գեղացի մը կար՝ նոյնպէս ձիաւոր, թխագոյն հագած,

մէջքը տարճանակ մը, ձեռքն ալ հրացան՝ որուն բունը թամբին կաշիէն կախուած քամկին մէջ կը հանգչէր: Աղջըկան նշանաւոր տեսքը Լիւդիոյ ուշադրութիւնը գրաւեց. քառասնամեայ կ՚երևար, բարձրահասակ, մութ կապուտաչուի, և կերպարանքին վրայ նըկարուած էին միանգամայն պարծենկոտութիւն, այլայլութիւն և տխրութիւն: Մետաքսեայ սև քօղ մը առած էր գլուխն, որ ՄԷՃՃարըդ կը կոչուի, և զոր Ճենովացիք մնացած են Գորսիկա. խարտեաչ մազերուն երկայն հիւսերն ալ փակեղ մը կը ձևացընէին գլխուն բոլորտիքը: Շատ պարզ էր հագուստը, բայց մաքուր:

Լիւդիա ժամանակ ունեցաւ աղէկ դիտելու զանոնք. որովհետև դիմացինը կանկ առաւ ճամբուն, ու աչքերուն վառուն կերպէն կ՚իմացուէր որ հետաքննութեամբ հարցմունքներ կ՚ընէր մէկու մը. պատասխանն առնելէն վերջը՝ գաւազանովը մտրակեց ձին, որ վազելով հասաւ և կանկ առաւ այն պանդոկին ուր իջած էին սըր Թոմաս Նէվիլ և Օրսոյ: Պանդոկապետին հետ քանի

մը խօսք զրուցելէն վերջը, ձիէն վար ցատքեց օրիորդը, և պանդոկին դրանն առջև քարի մը վրայ նստաւ. ան միջոցին իր մայրը ձիերն ախոռ տարաւ: Լիւդիա իր գաղղիական նորելուկ զգեստներովն անոր առջևէն անցաւ, բայց օրիորդն և ոչ աչքերը վեր վերուց: Քառորդ մը վերջը պատուհանէն նայեցաւ ու տեսաւ որ մէզզարոյ ունեցողը դեռևս նոյն տեղն ու նոյն դիրքով նստած էր: Քիչ ատենէն հազարապետն ու Օրսոյ որսորդութենէ դարձան. ան ատեն պանդոկապետը քանի մը խօսք բազրախօսացի աղջկանն ու մատովը Տէլլա Ռէպպիա պաշտօնակալը ցուցուց: Աղջիկը կարմրած՝ աշխուժով մը ոտք ելաւ, քիչ մը առաջ գնաց, բայց ետքը կանգ առաւ ու շփոթած կեցաւ: Օրսոյ մօտը կեցած հետաքրքրութեամբ կը նայէր վրան:

— Ան ատեն հարցուց աղջիկը.

— Դուն ես Օրսոյ Անտոն Տէլլա Ռէպպիա: Ես Աղաւնին եմ:

— Աղաւնի՛, աղաղակեց Օրսոյ. և գրկախառնելով հետը՝ սիրով համբոյրը տուաւ: Աս բանին վրայ զարմացան հա-

դարապետան ու Լիւզիա, որովհետեւ Անգղիա ճամբուն մէջ անանկ բան չըլ-լայիր:

— Եղբայր իմ, ըսաւ Ազատեի, ներէ ասանկ քու հրամանքիդ գալուս համար. Հանոնց լսելով բարեկամներէ, անանկ ուրախացաւ սիրտս որ...

Օրսոյ նորէն համբոյր տուաւ. ետքը Հազարապետին դառնալով,

— Քոյրս է, ըսաւ. բայց թէ որ ինքը զրուցած չըլլար, չէի կրնար ճանչնալ զինքը: Հազարապետ, կը յուսիմ որ այսօր հետդ ճաշելու պատիւը պիտի չունենամ... քոյրս...

— Ո՞ւր կ՚ուզես ճաշել, բարեկամ, ըսաւ Հազարապետը. գիտես որ բոլոր օրը մէկ անգամ ճաշ կը տրուի այս անշուք պանդոկին մէջ, ան ալ մերին է: Քրոջդ ընկերութիւնն աղջըկանս հա-ճելի պիտի անցնի:

Ազատեի եղբօրը նայեցաւ, որ զիջաւ Հազարապետին առաջարկը, և իրեքը միասնեց պանդոկին մեծագոյն սենեա-կը մտան, որ ընդունելութեան սենեակի և սեղանատան տեղ կը ծառայէր Հա-զարապետին: Երբոր Նեփիլ օրիորդին

առջև ելաւ Տէլլա Ռէպպլիա օրիորդը, խորունկ մը ծռեցաւ առանց բերանը բանալու. յայտնի կը տեսնուէր որ շատ խռոված էր, և թէ հաւանականապէս առաջին անգամն էր կեանքը մէջ որ կարգաւորեալ օտարականաց առջև կ՚ելլէր. սակայն բնաւ դեղացող կոպտութիւն չունէր: Նէլլի օրիորդը կապուեցաւ հետը. և որովհետև բոլոր պանդոկին իրենք բնակեր էին, առաջարկեց զուարճացի աղջկան որ իր սենեկին մէջ անկողին դնել տայ իրեն: Աղաւնի թոթովելով քանի մը շնորհակալութեան խօսք զրուցեց և Նէլլի օրիորդին սենեկապան աղախնոյն հետ առանձնացաւ վրան գլուխը մաքրելու համար:

Երբոր ընդունելութեան սենեակը դարձաւ, հայրապետեանին հրացանաց առջև կանգ առաւ՝ զորոնք որսորդները անկիւն մը դրեր էին: — Ի՞նչ աղուոր զէնքեր են, բաւ. քանի՞ կդ են արդեօք, հարցուց եղբօրը:

— Չէ. անգղիացի հրացաններ են և մերը հայրապետեան է: Շատ աղէկ շինուած են:

— Կ՚ուզէի, բաւ Աղաւնի, որ ա-

նոյն նման մէկ հատ մ՚ ալ դու ունե-նայիր :

— Ան երկրէն մէկը պաշտօնակալինն է, զրուցեց հազարապետը. և շատ ա-ղէկ կը գործածէ. այսօր տասնըչորս անգամ՝ պարպեց և նոյնչափ որս եկաւ ձեռքերնիս :

Այս բանով ուզեց հրացաններէն մէկն Օրայի ընծայել. Օրայ չէր ուզեր ընդունիլ, բայց վերջապէս յաղթուե-ցաւ. և ուրախութիւնը քրոջն եղաւ, որ տղու պէս զուարթացաւ, ան որ առաջ ծանր կեցած էր : — Ընտրէ որն որ կ՚ու-զես, բարեկամ, կ՚ըսէր հազարապետը : Օրայ յանձն չէր առներ : — Թող ուրեմն քոյրդ ընտրէ քու տեղդ : Աղաւնի չսպա-սեց որ երկու անգամ՝ ըսեն. հրացան-ներուն ամենէն անզարդն ընտրեց, որ ընտիր և մեծ բերնով էր. — Ասիկայ, ըսաւ, անտարակոյս աղէկ կը նետէ գնտակը :

Եղբայրն երբոր շփոթած շնորհակա-լութիւն կ՚ընէր, կերակրոյ ժամանակն հասաւ : Բայց Օրայ սկսաւ վախնալ որ չըլլայ թէ քոյրը գեղացւոյ գործք մը կամ խօսք մը ընէ : Սակայն Աղաւնի

միակերպ իրեն կը նայէր և իր շարժ-
մունքները կը համաձայնեցընէր անոր.
Երբեմն աչքերը արտաքոյ կարգի արխո-
րութեամբ մը եղբօրը վրայ կը սևեռէր,
և այն միջոցին թէ որ Օրայի աչքերուն
հանդիպէին, Օրայ մէկէն ուրիշ տեղ
կը նայէր, որովհետև կ՚իմանար թէ ինչ
կը նշանակէր Արամին նայուածքը: Սե-
ղանի վրայ խօսակցութիւնը գաղղիա-
րէն էր, որովհետև հազարապետը շատ
գէշ հայերէն կը խօսէր: Արամին ա-
ղէկ կը հասկընար գաղղիարէն և բաւ
քանի մը խօսքերն ալ փայլեցութեամբ
արտաբերեց:

Ընթրիքէն վերջը, հազարապետն՝ որ
անդրադարձեր էր թէ եղբօր և քը-
րոջ իրարու նայուածքները նշանակու-
թիւն ունէին, իր բնական համարձա-
կութեամբը հարցուց Օրայի թէ կ՚ու-
զէր արդեօք առանձին տեսնուիլ Արա-
մին հետ. և կ՚առաջարկէր որ ինքն աղ-
ջըկանն հետ քովի սենեակը քաշուէին:
Բայց Օրայ չհամաձայնեցաւ եղաւ և բա
թէ Բեհզադեաններու դերը խօսակցու-
ժամանակ կը գտնար, որ իր բնակու-
թիւնը այնտեղ հաստատէր: Ատոր հա-

զարդերուն լաւ առերեւականին տարա-
ծուեցաւ բազմոցին վրայ. և Նէվիլ օ-
րիորդը խօսակցութեան շատ նիւթեր
բանալէն վերջը՝ երբոր յուսահատեցաւ
Աղաւնին խօսեցնելէն, այսպէս Օրսայէ
որ Տանդէի քերթուածէն երգ մը կար-
դայ, զոր շատ կ'ախորժէր: Օրսայ ըն-
տրեց Դժոխքի այն երգն ուր Փրանչէս-
կայի Ռիմինացւոյ դրուագը նկարա-
գրուած է, և կրցածին չափ աղէկ կ'ար-
տասանէր: Որչափ առաջ կը տանէր ըն-
թերցումը, Աղաւնի աւելին կը մօտե-
նար, գլուխը վեր կը վերցընէր՝ որ ին-
չուան այն ատեն վար խոնարհեցուցած
էր, աչքերը կրակ կը ցայտեցընէին.
մէյ մը կը կարմրէր, մէյ մը դալկըննե-
ռէր, մէյ մը աթոռին վրայ կը տատա-
նէր: Տեղն է հոս ըսելու որ իտալացի
մը բանաստեղծութեան մը գեղեցկու-
թիւնն ըմբռնելու համար՝ վարժապետի
պէտք չունի:

Երբոր ընթերցումը լմնցաւ, —
Այս ինչ աղուոր է, աղաղակեց Աղաւ-
նի. ով գրեր է ասիկայ, եղբայր:

Երբոր Օրսայ քիչ մը շփոթեցաւ, Լի-
դիա ժպտելով պատասխանեց որ փը-

քենատցի հին բանաստեղծ մ'էր հե-
ղինակը.

— Երբոր Բիեդրաներա կ'երթանք, կարդացընել կու տամ' քեզի Տանդէն, ըսաւ Օրսոյ.

— Ո՛հ, ինչ աղուոր է, կրկնեց Աղաւնի. եւ մտքը պահած տուները ցած ձայնով արտասանեց, բայց կամաց կամաց եռանդելով բարձրաձայն սկսաւ կրկնել զանոնք եղբօրմէն աւելի աշխուժով.

Լիովին զարմացած — Կ'երևայ որ բանաստեղծութիւնը շատ կը սիրես, ըսաւ. Երջանիկ ես դու որ իբրև նոր գիրք մը պիտի կարդաս զՏանդէ.

— Կը տեսնես, ըսաւ Օրսոյ Նէվիլ օրիորդին, ինչ զօրութիւն ունին Տանդէի տողերը վայրենի աղջկան մը վրայ.... Բայց սխալ է ըսածս. միտքս կու գայ որ Աղաւնի նոյն արուեստէն է. պզտիկութենէն 'ի վեր ոտանաւոր դրելու հետ էր, և հայրս կը գրէր ինծի որ Բիեդրաներայի և շրջակայից ամենէն անուանի վոչէրոյ երգեցողն էր.

Աղաւնի աղաչանքի նայուածքով մը աչքերն եղբօրը վրայ դարձուց. իսկ

Նէվիլ օրիորդն, որ գործիգացի բանաստեղծ կանանց յանկարծախօսութիւնները լսելու կը մեռնէր, պաղատեցաւ Աղաւնիին որ իր տաղանդը ցուցընէ ։ Ան ատեն Օրսոյ մէջ մտաւ, որովհետև շատ ցաւեր էր քրոջը բանաստեղծութիւնն յիշած ըլլալուն. սկսաւ ըսել որ գործիգացի պալլադներն անհամ էին, և թէ Տանդէի տաղերէն վերջն այսպիսի քերթութիւններ ըսելն՝ իր երկրին պատիւ չէն ըներ ։ Այս խօսքերս Նէվիլ օրիորդին հետաքրքրութիւնն աւելի բորբոքեցուցին. վերջապէս բռնադատեցաւ Օրսոյ ըսելու իր քրոջը. — Ինչ և իցէ, ըսէ քանի մը տող, բայց նայէ որ կարճ ըսես ։

Աղաւնի մէյ մը հառաչեց, ուշի ուշով վայրկեան մը նայեցաւ սեղանին կապերտին վրայ, եաքը ձեղունին գերաններուն վրայ. յետոյ ձեռքերն աչքերուն վրայ դրած՝ իբրև թէ անով կրնար ուրիշներուն աչքէն ծածկուիլ, երգեց դողդոջուն ձայնիւ, կամ մանաւանդ թէ արտասանեց հետևեալ գեղօնքը.

Հագարապետը թէպէտ բան մը չէր հասկըցած, նիւթն ու ոճրախակցութիւններ ըրաւ. ետքը վրայ բերաւ. — Արդեօք ըսած տարօրինակ անհնա՞յ է որ այսօր ճաշէն կերանք. Լիւդիա յիշատակի տետրը բերաւ, և զարմացաւ որ յանկարծախօս բանաստեղծը գրելու ատեն՝ թղթին խնայութիւն կ՚ընէր. փոխանակ տող առ տող գրելու ոտանաւորը՝ ետեւ ետեւ կը գրէր. ուղղագրութիւնն ալ նշանաւոր մը չէր. Ներկել օրիորդը կը խնդար, իսկ Օրսայ կը վշտանար քրոջը ծիծաղելի ըլլալուն վրայ.

Երբոր քնոյ ժամանակն եկաւ, երկու օրիորդները սենեակնին քաշուեցան. Հոն Լիւդիա վզնոցը, գինդերն ու ապարանջանները հանելու միջոց՝ դիտեց որ ընկերը զգեստին տակէն երկայն բան մը հանեց և խնամքով մը մինտէրին տակը ծածկեց, զոր ստոլի մը վրայ դրած էր. ետքը ծնկան վրայ եկած՝ ջերմեռանդութեամբ աղօթքն ըրաւ, և քիչ վերջը անկողին մտաւ. Լիւդիա հետաքրքրութենէն մղեալ՝ ստոլին մօտեցաւ, և մինտէրուն վեր առաւ, իբրեւ թէ գնդասեղ մը կը փնտռէր. ան-

տու երկնքեկ հին դանակ մը, որուն կոթը սատափէ և արծըթէ էր, և հնամերոյ աչքին առջև շատ յարգ կրնար ունենալ: Ան ատեն հարցուց Ազանիին.

— Սովորութիւն կայ արդեօք հոս, որ աղջիկները գօտիանուն տակ դանակ պահեն:

— Այո, հարկ է որ ունենան, պատասխանեց հառաչանօք Ազանին. անզգամ մարդիկ լեցուն են:

— Կրնամ խրատցընէ սիրտ ընել ասով հարուած մը տալ. — և դանակը ձեռքն առած կը ձևացընէր զարնել, վերէն վար իջեցընելով ինչպէս որ թատրոններու մէջ կ'ընեն:

— Այո, պատասխանեց Ազանի, անոյշ ու ներդաշնակ ձայնիւ, երբոր անձիս և բարեկամացս պաշտպանութեանն համար հարկ է: . . . Բայց ատանկ չեն բռներ. աս կերպով կրնաս զքեզ վիրաւորել, երբոր թշնամիդ ետ քաշուելու ըլլայ: — Եւ անկողնին մէջ նըստելով դանակը ձեռքը, — Նայէ, ըսաւ, այսպէս կը զարնեն, վարէն վեր. աս կերպով մահացու է վէրքը կ'ըսեն: Եր-

Ջանեն եւ այն մարդիկն որ այսպիսի զէնքերու պէտք չունին ։

Ըսաւ և հասաւ, և գլուխը բարձին տուած՝ աչքերը գոցեց ։

Զ

Հիմա որ Ազամնի, Հազարապետեան ու իր աղջիկը քուն կ'ըլլան, յարմար ժամանակն է որ ընթերցողաց քանի մը տեղեկութիւններ տամ, որ անհրաժեշտ պէտք է գիտնան՝ այս ճշմարիտ պատմութիւնը լաւագոյն թափանցելու համար ։ Ինչուան հիմա բանածներէս յայտնի եղաւ որ տէլլա Ռէպուպլիա Հազարապետեան, Օրայի հայրը, սպաննուած մեռեր էր . բայց Գորսիկայի սպաննութիւնը Գաղղիոյ մարդասպանութեանց չեն նմաներ, որ թշուառութենէ ազառած մարդիկ արծաթեղէններ գողնալու համար՝ ապահովագոյն ճամբայ կը սեպեն զնոյն մեռցնելը . Հոն թշնամիներէն կը սպաննուի մարդ . բայց շատ անգամ մէջ կարելի չէ բանը թէ ինչ պատճառաւ թշնամի կ'ունենան Գորսիկացիք ։ Շատ ապաստանդներ կան որ

հին ատենէ 'ի վեր զիրար կ'ատեն, և իրենց սկզբնական ատելութեան պատճառը բոլորովին անյայտ եղած է:

Տէյլա Ռէպպիա հազարապետին ազգատոհմի շատ մը ազգատոհմերու հետ ատելութիւն ունէր, բայց մասնաւորապէս Պարրիչինի բռնածին հետ. և կ'ըսուէր թէ ԺԶ դարուն ամուսնութեան մը պատճառաւ գժտութիւն ծագելով մէջերնին, Պարրիչինի ցեղէն մէկը ըսպանութիւն ըրեր էր: Ուրիշներն ալ կ'ըսէին թէ Տէյլա Ռէպպիա ցեղէն էր սպաննողը. այսչափ միայն յայտնի է, որ աս երկու տանց մէջ արիւն թափուած էր: Սակայն արդարոց տեղւոյն ամբողութեան, ուրիշ սպանութիւնք առաջ չէին եկած անկից. և պատճառն այն է, որ երկու ցեղերն ալ ձեռնակի տէրութեանէն միշտ հալածուած ըլլալով, երիտասարդներն օտար երկիր կը փախչէին և ազգատոհմերուն երեսփոխանն չէր մնար: Ընցեալ դարուն վերջերը՝ Տէյլա Ռէպպիա ցեղէն մէկը, որ Նէապոլսոյ տէրութեան ծառայութեան մէջ պաշտօնակալ էր, խաղաբանի մը մէջ վէճ ունենալով ուրիշ

գինուորականներու հետ, սակայն շատ մը նախատական խօսքերէ զատ՝ Գործիգացի այծարած կանչեցին զինքը։ Պաշտօնակալը ձեռքը սուրին տարաւ. բայց երեք հոգւոյ դէմ մինակ ըլլալով բանը շատ ձախորդ պիտի երթար, թէ որ ուրիշ խաղացող մը վրայ հասած չըլլար և չպաշտպանէր զինքը՝ ըսելով. Ես ալ Գործիգացի եմ։ Այս տարականը Պարբերչինի ցեղէն էր, և չէր ճանչնար գիւղացիները։ Երբոր իրարու հետ ճանչուրցան, երկու կողմանէ ալ մեծամեծ քաղաքավարութիւններ և մշտնջենաւոր բարեկամութեան երդումներ եղան. որովհետև Գործիգացիք իրենց երկրէն դուրս շուտով կը բարեկամանան իրարու հետ, ինչ իրենց կղզւոյն մէջ բոլորովին հակառակն է։ Ասոր ըստուգութիւնը նոյն պարագային մէջ ալ տեսնուեցաւ. տէլլա Ռեպպիան և Պարբերչինի մտերիմ՝ բարեկամ՝ մնացին խաղերուն մէջ. իսկ Գործիգա դատաստանէն վերջը, շատ ցանցառ կը տեսնուէին իրարու հետ, թէպէտ նոյն գեղը կը բնակէին. և մեռնելնէն վերջը գեղացիները գուշակեցին որ հինգ վեց տարիէ 'ի

մէր իրարու բարև չէին տուած ։ իրենց զաւակներն ալ իրարմէ հեռու կեցան . Նիկիֆուչչիոյ, Օրսոյի հայրը, զինուորական կենաց մէջ մնաց . իսկ Կուիլիչէ Պարրիչինի՝ փաստաբան եղաւ ։ Երկու երկուքն ալ ընտանեաց գլուխ եղան, գրեթէ բնաւ չտեսնուեցան իրարու հետ, և իրարու վրայօք չէին խօսէր. այդէն արուեստով ալ բոլորովին կը զանազանէին իրարմէ ։

Սակայն օր մը, 1809 ին, Կուիլիչէ Պասթիա քաղաքին մէջ լրագրի մը մէջ կարդալով, որ Նիկիֆուչչիոյ հարիւրապետը պատուոյ նշան առած էր, ուրիշներու առջև ըսաւ որ չէր զարմանար այս բանիս վրայ, որովհետև *** զօրավարն՝ տէլլա Ռէպպիա ազգատոհմին պաշտպանն էր ։ Այս խօսքը Նիկիֆուչչիոյի ականջն հասուցին Վիէննա . անիկայ ալ զօրականացւոյ մը ըսաւ որ հայրենիքը դարձած միջոցը՝ շատ հարուստ պիտի գտնար Գիուլիչէ, որովհետև կորսնցուցած դատաստաններէն աւելի ստակ կը շահէր քան թէ յաղթածներէն ։ Պարրիչինի փաստաբանը լսեց այս երգիծաբանութիւնը և չկրցաւ մոռնալ ։ 1812

էն, նաեւ եղաւ իր գեղին գեղապետ դրուեցաւ, և շատ յոյս ունէր որ կը յաջողի. բայց *** զօրավարը Կէրֆուշշերյի կնոջ մէկ ազգականին առաջարկեց թղթով ընդհանրական քաղաքապետին, և խնդիրքը մէկէն կատարուեցաւ. Պարրիչինի հասարակ մարդը դրաւ որ Կէրֆուշշերյի հնարքովը բանը փոխուեցաւ: 1814 ին, Նափոլէոն կայսրութենէ ինկածին պէս՝ զօրավարին ընտրածն իբրև Պոնապարտի կուսակից պաշտօնէն վար ձգուեցաւ, ու տեղը Պարրիչինի անցաւ: Անիկայ ալ վար ինկաւ Հարիւր—աւուրց միջոցը. բայց այն մերկայից օրերէն ետքը, փառաւոր հանգիստ գեղապետութեան կեանքն ու քաղաքական արժանաւորութիւնները նորէն առաւ:

Այս միջոցէն սկսեալ՝ աղէկ առատ ունեցաւ Պարրիչինի. և միանգամայն սուտ ամբաստանութիւններով կը նեղէր տէլա Ռէպպլիա հարազատները, որոնք կէս թշուառ կապուած ըլլալով՝ Բեւեզգրաներու քաշուած կ'ապրէր. երբեմն այծ կը պահանջէր անկէ՝ ըսելով թէ ձին գեղապետին պարտիզին ցանկ առեր էր. երբեմն ալ եկեղեցւոյն յատակը նորո-

գերու պատճառանքով այն կարգած
գերեզմանաքարերը վերցընել կու տար,
որոնց վրայ անէլլա Ռէպպէկա ցեղին
ապպանչականները կային ։ Թէ որ այծերը
Հազարապետին պարտիզին մարգաշ-
տանկերն ուտէին, գեղապետը կենդա-
նեաց տէրերուն պաշտպան կ՚ըլլար ։
Հետզհետէ ան համեմայնաճառն որուն
յանձնուած էր Բրէհգրանէրայի թղթա-
տարութեան արկղիկը, և գիւղային պա-
հապանն՝ որ անդամահատ ծեր զի-
նուոր մին էր, երկուքն ալ անէլլա Ռէպ-
պէկաններուն մարդիկն ըլլալով պաշ-
տօնէ ինկան, և Պարրէշինի կողմին
մարդիկ անոնց տեղերնին յաջորդեցին ։

Հազարապետին կինը մահն հասա-
մեռաւ, և մեռնելէն առաջ խնդրեց որ
կ՚ուզէր այն պզտիկ անտառին մէջ թա-
ղուիլ, ուր կենդանութեանն ատեն կ՚ա-
խորժէր պտըտիլ ։ Գեղապետը մէկէն
խնդրեց առաւ որ գեղին գերեզմանա-
տանը թաղուի, որովհետև ինքն իշխա-
նութիւն չունէր առանձին թաղման մի
թոյլ տալու ։ Հազարապետը կրակ կրա-
րած՝ խնդրեց որ մինչև որ հրամանը
գայ, կնիկն ուզած տեղը պահուի թա-

ղուէր, և հոն փոսը բանալ տուաւ։ Գե-
ղապետն ալ գեղին գերեզմանատե-
ղւոյն մէջ փոս բանալ տուաւ, և գիւղա-
կան հսկողութեան ձիաւոր զինուորնե-
րը կանչեց, որպէս զի՝ կ'ըսէր՝ օրէնքը
յաղթէ։ Թաղման օրը երկու կողման
մարդիկն իրարու առջև ելան, և վախ
կար որ յարձակմունք մը ըլլայ տէլլա
Ռէպպիա տիկնոջ դիակին յափշտակե-
լու համար։ Քառասունի չափ աղէկ
մը զինեալ գեղացիներ, զորոնք մեռե-
լոյն ազգականները բերեր էին, ստիպե-
ցին ժողովրդապետն եկեղեցիէն դուրս
ելլելու միջոցը՝ որ անտառին ճամբան
բռնէ. մէկալ կողմէն ալ՝ գեղապետն,
իր երկու որդիքը, իրենց կողմնակից-
ներն և յիշեալ ձիաւոր զինուորքը վրայ
հասան՝ դէմ կենալու համար։ Երբոր
գեղապետը բռնադատեց և ուզեց որ
յուղարկաւորքն ետ դառնան, սպառ-
նալեաց և կրքի աղաղակներ բարձրա-
ցան օդուն մէջ. իր հակառակորդներն
աւելի բազմաթիւ էին և միաբերնին
դրած էին կամքերնին առաջ տանիլ։
Քանի մը հոգի հրացաններնին լեցուցին,
ինչուան նաև կ'ըսուի թէ հովիւ մը

զէնքը գեղապետին վրայ շտկեց . բայց Հազարապետը մէկ մերուց անոր հրացանն ու բռաւ . Ոչ որ առանց իմ հրամանիս պարպէ հրացանը ։ Գեղապետին աչքը փախնալով, ետ քաշուեցաւ իրեն հետեւորդաց հետ . ան ատեն յուզարկաւորութիւնը ճամբայ ելաւ, և կամաւ երկայն ճամբան բռնեց՝ որպէս զի գեղապետին տանն առջեւէն անցնի ։ Հոնտեղ՝ ամենուն մէկն որ յուզարկաւորաց մէջ եկեր մտեր էր, խելքը փչեց կեցցէ կայսր պոռաց . երկու իրեք հոգի պատասխանեցին ասոր, և տէլլա Թէսպինեարուն մարդիկն երթալով բահերով՝ ուզեցին գեղապետին մէկ եզն սպաննել, որ դիպուածով ճամբանէն կ'անցնէր ։ Բարեբաղդաբար հազարապետն արգիլեց այս բռնութիւնը ։

Մէկէն գեղապետը գրեց մեծ քաղաքապետին որ աստուածային ու մարդկային օրէնքներն ոտքի տակ առնուեր էին, իր իշխանութիւնն անարգուեր էր, և թէ տէլլա Թէսպինեա հազարապետը պոռնաբարդեան դաւակցութեան մը գլուխ կեցած էր՝ թագաւորութեան ժառանգութիւնը փոխել տալու և գրա-

ղաքացիս իրարու հետ ձգելու գիտենք։ Այս անհատականութիւնը չափազանց ըլլալով՝ հետեւանք չունեցաւ. Հաղորդա-կցեան ալ իրեն կողմանէ, մեծ քաղաքա-կցեանն և Թագաւորական գործակալին դրեց խնայուց բանը. և զօրաւոր ազ-դականներու պաշտպանութեամբը՝ դե-դապետին դիտաւորութիւնը արդար եղաւ, անցնա Թէպոլիս ատինոջ դիւանն անտառին մէջ մնաց, և կեցցէ կայսրն պոռացողը մինակ տասնըհինգ օրուան բանտի դատապարտուեցաւ։

Պորրէշինի փաստաբանը դայրացած՝ ուրիշ զէնք ձեռք առաւ. Հին արձանա-գիր մը դուրս հանելով՝ ուրկէ յանկարծա-կել Հաղորդակցեանն ձեռքէն ջրոյ փոսի մը որ ջրացք մը կը դարձնէր։ Դա-տաստանը տարի մը առաջէն եարք եր-բոր մնէր ալիոսի դուրս եկեր, և հաւա-նականաբար Հաղորդակցեանն կողմէ, Պորրէշինի Թագաւորական գործակա-լին ձեռքը նամակ մը յանձնեց, Ակա-դմնի անուամբ հաշտկաւոր ապագայէ մը գրուած, որուն մէջ մեհ և կրակ կը պարտանցր դեղադրեանն՝ թէ որ իր պա-հանջմունքէն ետ չկենար։ Դեղադրեան

տալ կը յուսար ատեանը Հաղարտապե-անն դէմ գրգռել, բայց նոյն միջոցին Ակոպինի նամակ մը գրեց Թագաւո-րական գործակալին՝ ծանուցանելով որ ասա էր իրեն անանուն գրուած նամա-կը, և «թէ որ գտնամ այս խարէու-թիւնն ընողը, կ'աւելցընէր, վրէժս պի-տի առնեմ»։ Ասով յայտնի եղաւ որ Ակոպինին չէր նամակը գրողը. անկա Ռէսպլիաններ զՊարկեչինեները կ'ամ-բաստանէին, ասոնք ալ զանոնք. եր-կու կողմէն ապստամբեաց ձայներ կը բարձրանային, և դատաւորք չէին կըր-նար յանցաւորն որոշել։

Այս միջոցին Դիլեֆուշշիոյ Հաղարտա-պեան սպանուեցաւ. և դատաստանին առջև հեռանալով կերպով սպանութեան պարագաները պատմուեցան։ 18.. մար-տին օգոստոսի 2 ին, իրիկուան մութ ատեն՝ կին մը որ ցորեն կը բերէր Բիէ-գրանէրա, տեսէ տան երկու հրացանի պայթուեցաւ ձայն լսեց, որ արձըկուած էին խոր ճամբէ մը, և Հարիւր յառն քայլ էր իրմէն հեռաւորութիւնը։ Ան-միջապէս վերջը մարդ մը տեսաւ որ վա-զելով այգիներու մէջ փախաւ ու դէպ

՚ի գետը կ՚երթար։ Այս մարդը մէկ վայրկեան մը կեցաւ ու ետ դարձա-նայեցաւ. բայց հետաւորութենէն չը-կրցաւ Բիւէգրի կնոջ որոշել անոր դէմ-քը, թող որ բերանը որթի տերեւ մը ունէր որով դրեթէ բոլոր երեսը ծած-կուած էր։ Յիշեալ անձը ձեռքովը նը-շան մը ըրաւ ընկերոջը զոր վկայն տե-սած չէր, եւ ետքը այգիներուն մէջ ան-երեւոյթ եղաւ։

Բիւէգրի կնիկը ձգեց բեռը՝ փախեց ապահովութեան տեղը, և գտաւ անկեալ Ռէպպեկա Հաղարապեան արեան մէջ թաթխուած՝ ընդունած երկու հա-րուածներէն, բայց դեռ կենդանի։ Խեղ-ճը կերկերաձայն կը պատերազմէր մա-հուան հետ, բայց բառ մը չէր կրնար արտաբերել. այս պարագան ճշմարիտ նեղեցին բժիշկները, քննելով որ վէր-քերը թոքին հանդիպած էին։ Կինը վեր վերուց զինքն ու հարցմունքներ ը-րաւ. Հոգեվարքը կ՚ուզէր խօսիլ, բայց չէր կրնար հասկցընել միտքը. և որով-հետև կը ջանար ձեռքը գրպանը խո-թել, կինն աճապարեց ու հանեց հոնկէ դրամապանակն ու ձեռքը տուաւ. վիրա-

ւորեայն առաւ բառերն ու ջանաց գրել եւ յաջողեցաւ ալ մեծաւ դժուարութեամբ. բայց միայն կարդալ չգիտնալով՝ չհասկըցաւ գրած տառերը։ Հազարապետեան ոգեսպաս՝ Բինէզըրի կնոջ ձեռքը թողուց գրապանակը, ուժով մը սխմելով զայն եւ արտաքոյ կարգի նայուածքով մը անոր նայելով, իբրեւ թէ ուզէր ըսել թէ սքանչելի անունն է գրածս։

Բինէզըրի կինը դեռ դառնալու միջոցը՝ Պարրիչինի գեղապետին հանդիպեցաւ, որ իր Վինչէնդէլլոյ որդւոյն հետ էր. եւ գիշեր էր։ Պատմեց կինը տեսածը. գեղապետն առաւ ձեռքէն գրապանակն ու պատառ փողեց՝ պաշտօնական ըզգեստն հագնելու եւ հետը քարտուղարն ու զինուորներ առնելու։ Մաղդալինէ Բինէզըրի Վինչէնդէլլոյի հետ մինակ մնալով, առաջարկեց անոր որ երթան օգնեն հազարապետին, յուսալով որ դեռ ողջ էր. բայց Վինչէնդէլլոյ պատասխանեց որ եթէ այսպիսի վայրկենի մը մէջ անանկ մարդու մը քովն երթայ՝ որ իր ազգատոհմին մահացու թշնամին եղած էր, մէկէն իբրեւ անոր

մօրդապանը կ՚ամբաստանուէր : Քիչ ատենէն գեղապետը վրայ հասաւ, հազարապետը մեռած գտաւ, դիակը վերցընել տուաւ, և դէպքին արձանագրութիւնը յօրինեց :

Պարրիչինի թէպէտ և այլայլած, մէկէն հազարապետին գրապանակին վրայ կնիքը դրաւ, և ձեռքն եղած քննութիւնները զանց չըրաւ. բայց էական բան մը դուրս չելաւ : Երբոր մանաւոր գրկուած դատաւորն եկաւ, բացին գրապանակը . և արիւնացայտ երեսի մը վրայ քանի մը տառեր գրուած տեսան . Ակոսդի . . . որով դատաւորը յայտնի մէկը դրաւ որ Ակոսզինի էր մօրդապանը : Սակայն Ադամի տէյիս Բէյզգիա, ապանելոյն աղջիկը, ուզեց քննել գրապանակը, և երկար ժամանակ թղթատելէն վերջը, ապացուցեց՝ մեռածին գլխագրերը ցուցընելով. Ահաւասիկ ասիկայ էրապաննաը : Ես սկսաւ պատմել որ քանի մը օր առաջ հայրը նամակ մը ընդունած ըլլալով իր որդիէն, պահեր էր զայն, բայց առաջ գրապանակին մէջ դրեր էր Օրսոյի հասցէն, որ փոխած էր իր գօրանեցին : Իսկ արդ այս հասցէն չէր

գտնուէր գրադարանակին մէջ, և Ադամնի կը հեռացընէր որ դեղապետը պատուէր էր զայն, ուր անտարակոյս հայրն իր պարանչին անուան ալ դրած էր, և թէ անոր տեղը դեղապետան Օկոստինեի անունը դրեր էր։ Դատաստոյն խօսք տեսաւ որ թուղթ մը կը պակսէր բաժտեղը. բայց եւքը գիտեց տեսաւ որ ուրիշ տեղեր ալ թղթեր կը պակսէին, և մկաներ ըսին որ հազարապետը սոփրութեան ունէր գրադարանակին թղթերն առանձ պատուերը՝ երբոր սիկարը կ'ուզէր փոխել. որով հաւանական կրնար ըլլալ որ անուշադրութեամբ գրուած հայէն ալ պատուած ըլլար։ Ասկէ զատ, ըսուեցաւ որ դեղապետը գրադարանակին առած միջոցը՝ մթուն պատճառաւ չէր կրնար կարդացած ըլլալ. և թէ ըսաւ տեղ մը կանձ առած չէր պայտար մոմակէն առաջ, և գինուորաց զինուորն հետը մէկտեղ առն մըտեր էր, և տեսեր էր անոր ճրագ փառելն, գդրադարանակը պահարանի մը մէջ դնելն ու կնքելը։

Երբոր գինուորաց գինուորը վկայութիւնը ըրինցուց, Ադամնի իրերումէն

դուրս ելած ատեն ինկաւ և երդմամբ կը պաղատէր որ խոստովանի թէ արդեօք կառք մը ամէն մինակ թողուցեր էր զգեղապետը : Զինուորականը քիչ մը տարակուսելէ վերջը՝ այնչափ այլայլու-թենէն զօրացած , վրայէն որ մօտ ան-նեալը գացեր էր թերթ մը թուղթ բե-րելու , բայց վայրկեան մըն ալ չէր ու-շացած , և նոյն միջոցին որ ինքը շօշա-փելով մթուն մէջ կը փնտռէր թուղ-թը՝ զեղապետը միշտ հետը կը խօսէր : Բայց ասկէ՝ կը վկայէր որ 'ի դարձին նոյն տեղը գտեր էր զարխնտող դրա-պանակն , որ նետեր էր զանիկայ զե-ղապետը :

Պարրիչինի մեծա հանդարտու-թեամբ պատասխան տուաւ . ըսաւ որ չէր մեղադրէր անկա Ռեպալլիա օրիոր-դին դայլոյթը , և ընդ հակառակն յանձն կ'առնէր ինքզինքն արդարացնելու : Ցուցուց որ այն իրիկուան ինքը դեղն էր . և Վինչենդէլլոյ որդին իրեն հետ ամէն դրան առջեւն էր ապացութեան միջոցը . իսկ Օռլանտոչչիոյ՝ միւս որդին՝ ջերմէ բռնուած , անկողնէն ըսաւ չէր ելած : Տանը բոլոր հրացանները դուրս հանեց ,

որմէց և ոչ մէկը նոր պարպուած էր. իսկ գրապանակին գալով, բաւ որ փութացեր էր կնքել ու իր փոխանորդին ձեռքն յանձնել զանիկայ, գուշակելով որ հաշուեմատեանին հետ ունեցած թշուառութեանը պատճառաւ կրնար կասկած լինալ իր վրայ: Հուսկ ուրեմն յիշեց որ Ակոպինի մահ սպառնացեր էր որուն որ իր անունովը թուղթ գրած էր, և թէ անշուշտ հաշուեմատեանին վրայ կասկածի գացած ըլլալով սպաններ էր:

Տէլլա Ռէպպիա հաշուեմատեանին մահուընէն հինգ օր վերջը՝ Ակոպինի գինուորաց ազգախ խմբէ մը պաշարուելով, զէնքը ձեռքը շունչը տուաւ: Վրան Ագանիկի թուղթ մը գտան, որուն մէջ կ՚երդուընցընէր գաւառակին որ յայտնէր թէ ինքն էր արդեօք թէ չէ մարդասպանը: Ակոպինի պատասխանած չըլլալով այս թղթին, շատերն հետեւցուցին որ սիրտ չէր ըրած աղջըկանն բանը որ ինքն էր հօրը կեանքն առնողը: Սակայն այն մարդիկն որ Ակոպինիի բնաւորութիւնն աղէկ կը ճանչնային, ցած ձայնով կ՚ըսէին՝ որ եթէ ինքն ըրած ըլլար այդ սպանութիւնը, փոխանակ բանը

կը պարծենար ։ Ուրիշ աւազակ մ'ալ , որ Գրանտալաչչիոյ կը կոչուէր , գրով ծանոյց Աղաւնիի որ իր պատուոյն վրայ երդուընելով կը յայտնէր իր ընկերոջ անմեղութիւնը . բայց իր միակ պատճառն այն էր՝ որ Ակոստինի բնաւ ըսած չէր իրեն որ Հազարապետին վրայ կասկածած ըլլայ ։

Հետեւանք ։ Բարրիչինիներն անպարտ եղան . դատաւորը գովեստներ տուաւ գեղապետին , և գեղապետն ալ այս առթիւ եռ կեցաւ ջրոյ փոսկին վրայ ըրած պահանջմունքէն ։

Աղաւնի պալլատա մը յանկարծախօսեց հօրը դիակին վրայ՝ բարեկամաց ներկայութեանն առջև . անոր մէջ Բարրիչինիներուն դէմ ունեցած բոլոր ատելութիւնը դուրս հանեց և յայտնապէս ազանիչ կոչեց զանոնք , միանգամայն եղբօրը վրէժխնդրութիւնը կը պատռնար անոնց ։ Այս այն պալլատան էր , զոր նաւաստին Լիդիայի առջև կ'երգէր . աշխարհք ամէն գիտէր զայն Գորսիգայի մէջ ։ Երբոր հօրը մահը լսեց Օրսոյ , որ այն միջոցին Հիւսիսային Գաղղիա կը գտնուէր , անժամանակեայ

հրաժեշտ մը խնդրեց, բայց չկրցաւ ձեռք ձգել։ Սկզբան քրոջմէն թուղթ մը առնելով՝ Պարրիչինի ազգատոհմն յանցաւոր ներկեց. եղբօր դատաստանական քննութեան ամէն թղթերուն օրինակին ընդունելով և դատաւորէն ալ մասնաւոր նամակ մը, գրեթէ բոլորովին համոզուեցաւ որ Ակոստինի էր մեղապարտը։ Ամէն երեք ամիսը մէյ մը Աղաւնի թուղթ կը գրէր իրեն և կը կրկնէր իր կասկածներն՝ զորոնք ինքը հաւաստիք կ'անուանէր։ Օրսոյ թէպէտ չէր հաւատար, բայց գորսիգացի արիւնն երակներուն մէջ կը բորբոքէր, և երբեմն քիչ կը մնար որ իր քրոջ կարծիքէն ըլլար։ Հանդերձ այսու՝ ամէն անգամ որ կը պատասխանէր Աղաւնիին՝ կ'ըսէր թէ իրեն բերած պատճառներն հաստատուն հիմ մը չունէին և հետևաբար հաւատք ընծայել չէր ըլլար անոնց. և կ'արգիլէր որ այն նիւթին վրայօք մէյ մ'ալ չգրէ իրեն. բայց 'ի զուր։ Այս կերպով երկու տարի անցնելէն վերջը, Օրսոյ կէս թոշակով հրաժեշտ ընդունեցաւ և դարձաւ իր հայրենիքը, ոչ թէ վրէժ առնելու դիտմամբ անոնցմէ՝ որ

ինքը միտքը անմեղ դրած էր, հապա իր քոյրն ամուսնացընելու համար և իր պզտիկ առագաստածքները ծախելու, թէ որ կարենար անոնցմով այնչափ ստակ ձեռք ձգել՝ որ կարենար ցամաք երկիր ապրիլ :

## Է.

Երկրորդ օրն Օրսոյ իմացուց որ Այաչչիոյէն Բիէդրանէրա պիտի երթար. չեմ գիտեր արդեօք Աղաւնիին վայրենի կերպերէն ամչնալով կ՚ընէր աս բանս, թէ իրեն քով ռեսուլթեանքին հայրենական տան յիշատակը բորբոքեր էր սրտին մէջ : Սակայն հազարապետէն խոստմունքը առաւ որ Պասդիա գացած ատենը իր տանը հանդիպի, և ինքն ալ անոր խոստմունք առաւ որ այծեամներ, փասիանններ, կինճեր, և այլն, որսալ կուտայ :

Ճամբայ ելլելու նախընթաց իրիկունը, փոխանակ որսի երթալու՝ ուզեց որ ծովածոցին վրայ ժուռ գան : Աղաւնի հետերնին չգնաց. Հազարապետն ալ միակերպ կը հեռանար երկու երիտա-

տարդաց քովէն՝ բանի չեկող թշուառնե-
րու վրայ հրացան պարպելու համար․
Դէպ 'ի Յունաց մատուռը կ'երթայի,
ուսկից ծովածոցին գեղեցկագոյն դիրքը
կը տեսնուի, բայց տաճիկ ոչ դիտելու
գեղեցկութեանը։ Պահ մը լռութենէ
ետքը՝ հարցուց Օրսայ ցլիւդիս.

— Ի՞նչպէս կ'երևայ քեզի քոյրս։

— Շատ հաւնեցայ, պատասխանեց
աղջիկը. և վրայ բերու խնտալով թէ
Քեզմէ աւելի իրեն հաւնեցայ, որով-
հետև իրօք գորսիկացի է ինքը, իսկ դու
շատ կրթեալ վայրենի ես։

— Շա՛տ կրթեալ... ընդ հակառակն
գիտնաս որ քանի որ ոտքս աս կղզւոյն
վրայ դրի, սկսայ վայրենանալ։ Հազար-
ումէկ ահաւոր մտածութեամբք պա-
շարուած կը տանջուիմ, մեր համար
անտարբեր քաշուելէն առաջ՝ պէտք ու-
նէի որ հեռու մէջ մը խօսիմ։

— Կը տեսնեմ քոյրդ համակրանու-
թիւնը. քեզի օրինակ մը։

— Մի՛ խաբուիր, քոյրս համակրանու-
թիւն չունի. իրու դեռ խօսք մը խօսած
չէ հետս, բայց աչքին ամէն մէկ նայ-
ուածքէն հասկըցայ ինչ ուզելն ինծմէ։

— ի՞նչ է նայիքը ուզածը։

— Պզտի բան մը միայն. կ՚ուզէ փորձել որ արդեօք հօրդ հրացանը կարաներու մէջ մնալ ալ կրնա՞յ սպաննել։

— Ո՜հ, ի՜նչ աղուոր մտածութիւն է քուկդ. քոյրդ քեզի բան մը չէ ըսած։

— Թէ որ ինքը վրէժխնդրութեան փափաքանօք լեցուած չըլլար, զիս տեսածին պէս հօրեղբօրս վրայ խօսած կ՚ըլլար, և անոնց անունը կու տար՝ զօրանք ինքը — անիրաւ տեղը՝ զինեալ — Հազարապետեան մարդասպանները կը սեպէ. բայց ինքը բերանը չբացաւ։ Պէտք է գիտնաս որ մեր Գորախիզացիքս վարպետորդի ենք. Աղաներն գիտնալով որ դեռ բոլորովին իր ձեռքը չեմ, չուզեր աչքս վախցընել, որպէս զի չըլլայ որ փախչիմ. բայց երբոր մէյ մը զահավիժին ծայրը տանի հասցընէ զիս, և զլուխս ակրոսի պարապի, ան ատեն կը հրէ զիս անդունդին մէջ։

Այս խօսքէն ետքը՝ Օհան հօրը մահուանը քանի մը պարագաները պատմեց Լեւոնիս օրիորդին, որոնցմով ինքը հաստատ մտքը դրած էր թէ Ակոպինի էր մարդասպանը։ — Բայց կարելի

չեղաւ համոզել զԱզգանի, վրայ բերաւ Օրայ, ինչպէս վերջի նամակէն տեսայ։ Պարբերականներուն մահն երդուընցած է, և... անոր վրայ ունեցած վստահութիւնս... և թերևս անոնք հիմա այս աշխարհիս մէջ չէին ըլլար, թէ որ նախապաշարմամբ միտքը դրած չըլլար որ վրէժխնդրութեան գործադրութիւն ինծի կ'իյնայ՝ երբև գլուխ ընտանեաց և երբև պարտաւորեալ ՚ի պատուոյս։

— Իրաւցընէ զօրեղ կը դրպարտես։

— Դու խիկ չըսիր թէ գործիդացի է. ուստի ուրիշ գործիդացւոց ընտրութիւնն ունի իրքն ալ։... Գիտես ինչու համար երեկ տխուր էի։

— Չէ. բայց քիչ մը առնէ մեր մերթ ընդ մերթ մաղձոտութիւններ կ'ունենաս. մեր ճանչուորելուն առաջին օրերն աւելի զուարթ էիր։

— Երեկ, ընդ հակառակն, տխրականէն աւելի ուրախ և գոհ էի. որովհետև տեսայ քու ընտանութիւնդ քովս հետ... երբ հազարապետն ու ես նաւակով կը զայինք. գիտես ինչ զուրցեց մեզզամ նաւավարներէն մէկը. «Տաս վայրի կենդանիներ սպանեցիր դու՝

Օրս՝ Անտոն, բայց պէտք տեսնես որ Օսմանտաշչերոյ Պարիզիններէն քեզմէ ա-ւելի կարող ոստադ է:

— Ի՞նչ կայ որ այս խօսքերուն մէջ. մի՞թէ միայն գրիչ ես որ արտաքոյ կար-գի ոստադ մըն ես:

— Բայց չե՞ս հասկընար որ անգամմը կ՚ուզէր ըսել թէ Օսմանտաշչերուն սպան-նելու չափ կարող չեն:

— Վախ կը ձգես վրաս. կ՚երեւայ որ ձեր կղզւոյն օդն ոչ միայն տենդ կը բերէ, այլ և կը խենթեցընէ զմարդ. Բարեբաղդաբար քիչ ատենէն մենք ճամբայ պէտք ելլենք հոստեղէն:

— Բայց առաջ Բիէնդրամիէրս պէտք հանդիպինք, ինչպէս որ քրոջս խոստա-ցար:

— Իսկ թէ որ յանկարծ այս խոստ-մունքներս չպահենք, անտարակոյս ա-հագին վրէժխնդրութիւն մը պէտք փոր-ձի գլուխնիս:

— Կը յիշե՞ս հօրդ մէկալ օր պատ-մածն հնդիկներու վրայ, որ հնդկային ընկերութեան քաղաքապետներուն կը սպառնան ինքզինքնին անօթութեամբ սպաննելու՝ թէ որ իրենց աղերսանքներու-նուն միտ չընեն:

— Կ՚ուզես ըսել որ դուն ալ ինքզինքդ անօթութեամբ կը սպաննես . բայց չեմ՛ հաւատար . շատ շատ օր մը անօթի կը կենաս, երբ Աղաճի անանկ համով պրոշչիոյ[1] մը կու տայ քեզի, որ չես գիտնար ու կ՚ուտես ։

— Ծաղր կ՚ընես զիս . բայց պէտք չէր ատանկ վարուէիր հետս ։ Դուն միայն պէտք էր արգիլէիր որ չխենթենամ, դուն իմ առաջնորդս էիր . իսկ հիմա ...

— Զքեզ ամուր բռնելու համար՝ քու անձնական և զինուորական պատիւդ կարծեմ բաւական պէտք է ըլլայ ... և թէ որ կ՚ուզես նէ՝ քու առաջնորդիդ յիշատակը ։

— Ի՞նչ . արդեօք իմ վրաս ալ կը մըտածե՞ս ։

— Մտիկ ըրէ, ըսաւ այն ատեն օրեր-դը. տղայ ես, տղու պէս վարուիմ հետդ ։ Պզտիկութեանս մէջոցը՝ մայրս աղուոր մանեակ մը տուաւ ինծի, որուն կը ցանկայի մեծնալէս, բայց ըսաւ . — Ամէն անգամ որ վիզդ կ՚անցընես այս մանեակը,

[1] Տեսակ մը եփած պանիր է սերով, որ Կոր-սիկայի յատուկ է ։

յիշէ՛ որ դեռ գաղղիարէն չե՛ս գիտեր։ Մանուկին յարգը քիչ մը կորսուեցաւ առջեւս, որովհետեւ խղճմտանքի ախտ մը կ'ըլլար ինծի. բայց գործածեցի զայն ու սորվեցայ գաղղիարէնը։ Կը տեսնես աս մանուկին. եգիպտացի ակունք մ'է, բուրգի մը մէջ գտնուած՝ ինչպէս կ'ըսեն։ Վրայի սրբագրերը գեղեցիկ նշանակութիւն մը ունին. չէրը՝ մարդկային կեանքը կը նշանակէ. իսկ վահանին ու նիզակ բռնող ձեռքը կռիւ, պատերազմ. որով կ'ուզէ ըսել թէ կեանքը պատերազմ մըն է։ Անշուշտ այս մանուկին քեզի կու տամ. երբոր միտքդ զորսիգացի գէշ մտածութիւն մը գայ, նայէ անոր վրայ և միտքդ բեր որ կենց տըւած պատերազմին յաղթելու է։ — Կարծեմ քարոզելու բաւական կերպ ունիմ։

— Կը խոստանամ որ...

— Նայէ որ զքեզ կախել չտաս, ըսաւ Լուդիս խնդալով. ու դէպ 'ի հօրը վազելով՝ Հայր իմ, զրուցեց, ձգէ խեղճ թռչունները, ու եկուր մեզի հետ բանաստեղծէ Նափոլէոնի քարայրին մէջ։

Ը

Ո և իցէ բաժանումն հանդիսաւոր և վսեմ տեսարան մըն է, թէպէտ քիչ ժամանակի համար ըլլայ հեռաւորութիւնը։ Օրսոյ որովհետև առաւօտանց շատ կանուխ ճամբայ պիտի ելլար քրոջն հետ, առջի իրիկուընէ հրաժեշտի բարեւը տուաւ Լիդիոյ, չյուսալով որ անիկայ իր սովորական ժամանակէն առաջ անկողնէն ելլէ։ Բայց շատ զարմացաւ երբոր երկրորդ առաւօտն հազարապետին հետ սուրճ խմելու ատենը՝ Լիդիա Աղաւնիի հետ ներս մտաւ։ Այնչափ մեծ բան էր անգղիացի կնոջ մը՝ մանաւանդ Նեվիլ օրիորդին համար առաւօտեան ժամը հինգին ելլել, որ Օրսոյ

— Շատ կը ցաւիմ, ըսաւ աղջըկան, որ սաստիկ նեղութիւն յանձն առեր ես. անտարակոյս քոյրս արթնցուցած է ըզքեզ՝ թէպէտ ես աղաչած էի իրեն որ հանգիստ թողու. ո գիտէ ինչեր ըսեր մեղէք մեր վրայօք. թերեւս հիմա կ'ուզես որ կախուած ըլլամ։

— Չէ, պատասխանեց օրիորդը ցած

ձայնիւ և խաղերէն, որպէս զի Հայրը չհասկընայ։ Տեսնելով որ երէկ երեկուան ըրած անմեղ կատակներուս համար վշտացար, չուզեցի որ դէշ համարմամբ բաժնուիս։ Ի՞նչ ահաւոր մարդիկ էք դուք Գորոխզացիքդ։ Բարի ճանապարհ ուղեւոր. յուսամք քիչ ատենէն տեսնուելու։

Օրսոյ պատասխան չտուաւ. և իրարու ձեռքը սեղմեցին։ Ան միջոցին Աշանի մօտեցաւ իրեն, պատուհանի մը առջև տարաւ զինքն և Մէ.ՏՏարոյին տակը պահած մէկ բան մը ցուցընելով՝ փայլկեան մը ցած ձայնիւ հետը խօսեցաւ։

— Քոյրս, ըսաւ Օրսոյ՝ Նէվիլ օրիորդին, նոր տեսակ ընծայ մը կ'ուզէ ընել քեզի. սակայն գիտնաս որ Գորոխզացիքս ուրիշ մեծ ընծայ չունինք տալու՝ բայց եթէ մեր սէրն որ ինաւ չպակսիր։ Քոյրս կ'ըսէ ինծի որ այս դանակին ըղձայլեր ես. և անանկ յարգ կու տայ ինքն ասոր՝ որ հրաման կը խնդրէ ինծմէ քեզի ընծայելու. ես ալ կը տարակուսիմ թէ տամ արդեօք, որովհետև կը վախնամ որ յանկարծ կը խնդաս վրանիս։

— Ընտիր դանակ մըն է, ըսաւ Լի-

գիս . բայց ձեր ազգատոհմին զէնքն ըլլալով՝ չեմ կրնար ընդունիլ ։

— Հօրս դանակը չէ, աղաղակեց Աղաւնի . Թէոդորոս Թագաւորին տուածն է հօրս մէկ ազգականին ։ Թէ որ կ'ընդունիս, մեզի շատ ախորժելի բան կ'ընես ։

— Տես, մի արհամարհեր Թագաւորի մը դանակն, ըսաւ Օրայ ։

Լուգիոյ փորձութիւնն եկաւ . որովհետեւ գիտէր թէ ինչ մեծ հետաքրքրքրութեան նիւթ պիտի ըլլար իր Լոնտրայի Ս. Ցակոբի հրապարակին բնակարաններին մէջ Թէոդորոսի դանակը ։ Ուստի առաւ ձեռքը դանակը, բայց միանգամայն տարակուսանքով մը դարձեց Աղաւնիի . — Ազնիւ Աղաւնի, սիրտս առաջ չերթար թող տալու որ անզէն երթաս ։

— Եղբայրս հետս է, պատասխանեց աղջիկը պարծենկոտութեամբ, և հօրս տուած պատուական հրացանն ունիմ ։

— Օրայ, ընդունեցի՛ր զանիկայ ։

Նէվիլ օրիորդն ընդունեցաւ դանակը, և Աղաւնի ժողովրդական նախապաշարմամբ՝ փող մը պահանջեց իրմէ

իբրև մճարք, որպէս զի հասու դէմքը
ծիծաղ մը չբերէ իր բարեկամուհւոյն :
Վերջապէս բաժնուեցան վայրկեանն ե-
կաւ. Օրայ նորէն օրիորդին ձեռքը սըղ-
մեց, իսկ Ազաւնի համբոյր տուաւ : Որա-
հին պատուհանէն տեսաւ Լիւդիա եր-
կուքին ձի հեծնալը. և տակաւին անգամ
Ազաւնիին աչքերուն մէջ չարագուշակ
ուրախութիւն մը նշմարեց : Տեսնելով
գորախգացի կորիճ ու անձնեայ օրիոր-
դը՝ բարբարոսական պատույ մը դա-
դափարով մոլեալ, հպարտութեան ճակ-
տին վրայ նստած, չրթունքը հեգնա-
կան ժպտով մը ծռած, և զինեալ եղ-
բայրն հետն առած՝ իբրև թէ ձախորդ
արշաւանքի մը տանելու համար, Լիւ-
դիոյ միտքն եկաւ Օրայի վախը. և ե-
րեւակայեց մտքին առջև որ երիտասար-
դը կորստեան կը դիմէր : Այս վայրկե-
նին Օրայ գլուխը վեր վերուց ու տե-
սաւ զԼիւդիա. և չեմ գիտեր՝ արդեօք
անոր մտքէն անցածը գուշակելով՝ թէ
վերջին բարև մը տալու համար, տա-
եգիպտացի մատանին, զոր շղթայէ մը կա-
խած էր, ու համբուրեց : Լիւդիա պա-
տուհանէն ներս քաշուեցաւ. եարը քիչ

ատենէն նորէն հոն երթալով՝ տեսա-ւ որ քոյր եղբայր կը հեռանային իրենց պզտիկ ձիերուն արշաւասոյր ընթաց-քովը ու դէպ 'ի լեռները կ՚երթային ։ Կէս ժամ ետքը՝ հազարապետը դիտա-կով ցուցուց զանոնք Լուդվիգին որ ծայրին վերջին ծայրն հասած էին, եւ Օրայ մա-կերպ գլուխը դէպ 'ի քաղաքը կը դար-ձրնէր ։ Քիչ ատենէն ճահիճներուն ե-տեւն աներեւութացան ։

Լուդվիգ ինքզինքը հայլիի մէջ նայե-ցաւ ու դէմքը տժգոյն գտաւ ։ Անկողինին վրայ նետուեցաւ եւ ուզեց քուն ըլլալ, բայց չկրցաւ. եւ եռանդ ետեւ այլ եւ այլ զգացմունքներ կը խռովէին փոփոխակի սրտին մէջ ։ Մենք ալ թողունք զինքը որ խռովի ։

Թ.

Այն միջոցին դեռ Օրայ եւ Աղամնի ճամբանին առաջ կը տանէին ։ Անջի փոքրան ձիերնին փաղցուցած ատենին չկրցան իրարու հետ խօսիլ. բայց երբ զառիվայրերէ ելլելու միջոցը կենդա-նիները կամաց կը քալցընէին, Այսու-

չէր թողուցած բարեկամներուն վրայ խօսք կը բանային ։ Աղաւնի զովեստով կը խօսէր Լուսիոյ շնորհալի կերպին վրայ . երբ հազարապետին հարուստ ըլլալն ուզեց իմանալ , և թէ արդեօք Լուսիա իր միածին աղջիկն էր ։ Ինծի անանկ կ'երեւայ , կը զրուցէր Աղաւնի , թէ որ նէյրը շատ գութ ունի վրան ...

— Օրայ լուռ կեցաւ — ... մեր ազգատոհմն ալ ատենօք հարուստ է եղեր , այսօրուան օրս ալ նշանաւորներէն մէկն է կղզւոյս մէջ ։ Ազնուականութիւնը՝ գաւառական ցեղերուն մէջ միայն մնացած է հիմա . և մենք հնագոյններէն մէկն ենք ։ Գիտես , Օրայ . թէ որ ես քու տեղդ ըլլայի , շիտակէ շիտակ Լուսիան կը խնդրէի հօրմէն հարսնութեան . (Օրայ ուսերը թօթվեց) ։ Իրեն օժտը Ձալուէդդայի անտառը կը գնէի և մեր բնակութեան մօտ եղած այգիները , և տաշած քարէ ալ աղուոր տուն մը կը շինէի ։

— Խենթեցեր ես , Աղաւնի , պատասխանեց Օրայ՝ ձին փաղցընելով ։

Այս կերպ խօսակցութեամբը շատ մը ճամբայ ընելէն վերջը , գեղ մը հասան Պողոնեանցի մօտ , ուր ուզեցին

ճաշել և գիշերն անցընել բարեկամի մը տուն : Մեծ մարդասիրութեամբ ընդունուեցան . Գորսիկացւոց հիւրասիրութիւնն աղէկ ճանչցուած համար՝ պէտք է փորձով տեսնել : Երկրորդ օրը բարեկամնին հետերնին ընկերեց փարատակ մը տեղ . և բաժնուելու ատեն

— Կը տեսնա՞ս , ըսաւ Օրսոյի , սա անտառն և մաքին . մարդ մը՝ թէ որ ձախորդ գործողութիւն մը ըրած ըլլայ՝ սաալ սարի հանգիստ անոնց մէջ կրնայ պահուըտիլ ու ապրիլ զինուորաց ձեռքէն : Այս անտառները կ'երթան կը միանան Վիցցաւոնայի անտառին հետ . և թէ որ պահուըտողը բարեկամներ ունենայ Պոգոնեանոյի կամ շրջակայից մէջ , իր կենաց ամէն պէտքը կը գըտնայ : Ինչ գեղեցիկ հրացան ունիս . անշուշտ շատ հեռուն կը նետէ անիկայ . ես կարծեմ՝ որ կինճէն զատ ուրիշ բան ալ կրնաս սպաննել ատով :

Յետոյ գրկախառն համբուրիւ բաժնուեցան իրարմէ . և իւրաքանչիւրն իր ճամբան գնաց : Մեր ճանապարհորդք մօտեցան Բիէդրանէրայի , և երբ նեղ կիրճէ մը պիտի անցնէին , եօթը ութը

հոգի ատամ հրացաններով զինեալ, որոնցմէ մէկ երկուքը քարերու վրայ նըստեր էին, այլք խոտին վրայ պառկեր, իսկ ձիացածները ձորի վրայ և պահպանութեան հետ կ'երևային. ձիերնին ալ իրենցմէ քիչ հեռու կ'արածէին: Աղւանի պզտի դիտակով մը զննելէն վերջը,

— Մե՛ր մարդիկն են, պատասխանեց ուրախութեամբ. Բիէրուշչիոյ ճիշդ կատարեր է տուած հրամանը:

— Ո՞ր մեր մարդիկը:

— Մե՛ր հովիւներն են. երկու օր առաջ Բիէրուշչիին գրեցի որ երթայ ժողվէ այս կորիճները, որպէս զի քեզի ընկերեն մինչև տուն. որովհետև չկայլեր որ առանց բազմութեան մտնաս Բիէզգրանէրա. թող որ Գարրիչիինիէրուն ձեռքէն ամէն բան կու գայ:

—Աղւանի, ըսաւ Օրայ խստութեամբ, ես քանի՛ հեղ զրուցեցի որ Գարրիչիինիներուն և քու անհիմն կասկածներուդ վրայ չխօսիս հետս: Ես չե՛մ ուզեր ծիծաղելի ըլլալ առանձ պատարկ մարդկանց խմբի մը հետ տուն մտնալով. և կը զարմանամ ինչպէս ժողվեր ես զանոնք առանց ինծի իմաց տալու:

— Եղբայր իմ, մոռցեր ես հայրենիքդ. ինծի կ'երեւայ վրադ հակելն երբոր դու անխոհեմութեամբ փառանգի մէջ կը դնես անձդ. ինչ որ ըրի՝ պէտք էր ըրած ըլլայի ։

Նոյն միջոցին հովիւները առեան զիրենք, և ձիերնին հեծնալով՝ իրենց ընդառաջ ինկան կայծակի պէս ։

— Կեցցէ Օրս' Անտոն, պառաւ առոյգ ծերունի մը ճերմակ մօրուքով, որ գործածուցի չուխայէ կնդղուր վերարկու մը առած էր վրան՝ իր այծերուն մորթէն աւելի հաստ ։ Ճիշդ հօրը կը նմանի. միայն աւելի բարձրահասակ և աւելի զօրաւոր է ։ Ի՛նչ ընտիր հրացան. այս հրացանին վրայ պիտի խօսուի, Օրս' Անտոն ։

— Կեցցէ Օրս' Անտոն, աղաղակեցին ամէնքը միաբերան ։ Գիտէինք որ վերջապէս կուգայ ինքը հոս ։

— Ա՛հ, Օրս' Անտոն, գոչեց ազնիւ գունով յաղթանդամ հովիւ մը, ինչ ուրախութիւն պիտի զգար հայրդ թէ որ հիմա հոս ըլլար քեզ ընդունելու ։ Ազնիւ անձ էր. դու այսօր զինքը տեսած կ'ըլլայիր՝ թէ որ խօսքիս մտիկ ը-

բաց ըլլար, թէ որ թող տուած ըլլար որ ձիւարիչէի բանը ըմբռնցընեմ... կրարին մարդը մինակ չըլլալ ինծի. բայց հիմա աղէկ իմացած է որ ես իրաւունք ունէի անանկ խօսելու:

— Բան մը չէ, պատասխանեց ծերանին. ուրիշ միտս մը չկայ՝ բայց եթէ քիչ մը ուշի սպասած կ'ըլլայ ձիւարիչէն:

— Ներեցէ՛ք Օր՛ Անտոն, պատասխանեց դարձեալ անձերը միաբան և տասը տասներկու Հրացան պարպուեցան:

Օրայ աղջի բերան չկրցաւ բերանը բանալ բազմութեան մէջ, որ չորս կողմէն առեր էին և անձերը մի և նոյն միջոցին խօսելով՝ ձեռքը կ'ուզէին թօթվել: Վերջապէս հրամայողական և սաստալ կերպով մը

— Բարեկամք, բաւ, շնորհակալ եմ ձեր՝ իմ և հօրս վրայ ցուցուցած սիրոյն. բայց չեմ ուզեր որ մէկը ինծի խորհուրդ տայ. ես գիտեմ ընելիքս:

— Իրաւունք ունի, իրաւունք ունի, գոչեցին հովիւները: Բաւական է գիտնաս որ մենք քովդ ենք:

— Գիտեմ. բայց հիմա մարդու պէտք չունիմ, որովհետև տանս փականքի մէջ

չէ ։ Ձեզ տեսնեմ՝, եկէք ձեր այծերուն գացէք · ես Բիւզդրանդերայի ճամբան գիտեմ, առաջնորդի պէտք չունիմ:

— Բնաւ մի վախնար, Օրա՛ Անասն, ըսաւ ծերունին · ամէնքն այսօր չեն համարձակիր երևնալու · մուկը կը փախէ ծակը կը մնայ՝ երբոր կատուն դուրս կ՚ելլէ ։

— Կատու դու ես, ճերմակ մօրուք, պատասխանեց Օրայ ։ Ի՞նչ է անունդ ։

— Ի՞նչ, չե՞ս ճանչնար զիս, որ այնչափ անգամ՝ խածնող ջորւոյս վրայ առեր եմ՝ քեզ ։ Մխայրդ չիմար Բոլոյ Կրիֆֆին. կարիճ մարդ է, ինչպէս կը տեսնես, և Հոգւով ու մարմնով տէրը Թէպրիկուներուն հետ է ։ Երբոր Հրացանդ խօսի օր մը, խօսք մը դուրսէ՝ ձեռքի ծեր Հրացանս, որ իր տիրոջն հաւատարիմ է, բնաւ չկենար · ապահով եղիր, Օրա՛ Անասն ։

— Աղէկ, աղէկ · բայց հիմա գացէք ու թող տանք որ մենք ճամբանիս շարունակենք ։

Վերջապէս հովիւները հեռացան, բայց մերթ ընդ մերթ ճամբուն բարձր տեղերը կանգ կ՚առնէին նայելու համար

թէ արդեօք զարմանի նաւորդներ կային, և միշտ կը ջանային Օրայի և իր քրոջը մօտ ըլլալու, որպէս զի պէտք եղած ատեն օգնութեան հասնին: Եւ ծերունին Բօղ Կրիֆֆիթ կ'ըսէր ընկերացը. Ես ճանչցայ Օրայի մայրը. մօրը զաւակը չափ չէր բաւել. բայց անշուշտ աղէկ ըսէ: Բարբարային հօրն եղած է: Ես խօսք կու-տամ որ ասկէ մը չերթար՝ գեղապետին մորթէն աւել մը կրնայ շինուիլ:

Առանձնակամ Օրայ ամէն Ռէգափէրա մի-աս իր գեղն և համատ իր զաւսքայ հայց հին առնէր: Տեղը Ռէգափիանե-րան կռուակիցները, որ երկայն ատենէ 'ի վեր անողորմ մեռցած էին, բարբա-րոսանք ընդդառաջ եկեր էին, և գեղին բնակիչներէն անոնք՝ որ չէին ել՝ գրա-ներնուն առջեւ կեցած, անոր անցնելը տեսնալ կ'ուզէին. իսկ Փարրիշիններն անոնցմէն քաշուած՝ մանրատանեցի-րան մէջէն կը նայէին:

Բրեզիլեանէրա գեղը անկանոն ձևով շինուած է, ինչպէս Գորտեգայի բոլոր գեղերը. տուներն ասդին անդին ցրուած են ապառի սարահարթի մը վրայ: Գեղին մէջտեղը մեծ կաղնի ծառ մը բարձրա-

ցած է. քանի կրանիտեայ ապառաժ մը, որ փայլեայ խաղաղեկով ձոհիկ ակուն-քէ մը ջուր կու գայ : Այս հասարակաց օգտակար շինուածքը անցեալ Սելեւկեա-ներուն ու Պարրիչինիներուն արդիւնքն է. բայց դառն չկարծուիր որ առանոք այս երկու ցեղերուն մէջ ալ և խաղաղու-թիւն կը տիրէ եղեր. ընդ հակառակն՝ նախանձու պատճառ բրած են այս բանս : Տեղս Սելեւկեա հազարապետող պզտի գաւառ մը գրանց գրեթէ եր գիւ-ղական բարեկարգութեան գլխաւորաց՝ ապառաժի մը շինութեան համար. աս ամենեւեան Պարրիչինի փառաւորանքն՝ին ալ առաւ զինքը, և երկուքին նախան-ձորդութենէն օգուտը բեհեզրանէրայի եղաւ : Կայծերին և ապառաժին քով գա-ւառի մէջ մը կայ՝ զոր հրապարակ կը կոչեն, ուր պարապորդները կը ժող-վուին երեկոյեան դէմ. երբեմն թուղթ կը խաղային հոն, և շատին անգամ մը՝ բարեկենդանի մէջ՝ պար կը բռնեն : Հրապարակին երկու ծայրերը մէյմէկ կրանիտեայ չէնք կայ՝ ամենի բարձր քան թէ լայն. և են անցեալ Սելեւկեաններուն և Պարրիչինիներուն աշտարակները :

ճարտարապետութիւնին նոյն, բարձ-
րութիւնին ալ նոյն, որով կը տեսնուի
որ բաղդն յիշուած այն տանն հաւա-
սար բռնած էր երկու աղդատահեղերը :
Գէշ չըլլար կարծել բացատրելը թէ
ինչ են այս աշտարակ բռուածները :
Փառակուափ չէնք մ՚է գրեթէ քառա-
սուն ոտք բարձրութեամբ. գագը նեղ
է և հողէն ութը ոտք բարձրութեամբ,
որ չխափակ սանդղէ մը կ՚ելլըցուի : Դրան
վրայ դուրս եկած պատուհան մը կայ,
որուն տակէն ծակ մը բացուած է. ան
ծակէն սանդղ վառնալի՝ ներս գալ ու-
զող թշնամի մը կրնայ սպաննուիլ : Պա-
տուհանին և դրան մէջտեղին վրայ եր-
կու վահանակ կայ, որոնցմէ մէկուն վը-
րայ ատենոք Ճենովայի խաչը քանդա-
կուած էր. իսկ մէկալին վրայ ասանտէր
ազգատոհմին նիշը կը տեսնուի : Պա-
տուհանին շրջանակին և վահանակնե-
րուն վրայ հրացանի գնտակներու հետ-
քեր կային. այս պարագային ալ դիտ-
նալէն վերջը՝ Գորսիկայի մէջին դար-
բնակարանի մը գաղափարն առած կ՚ըլ-
լայ ընթերցողը : Մասցայ բանելու որ բնա-
կութեան չէնքերն ալ աշտարակներուն

Հրապարակին որ հասան, Աղաւնի Գարիպալտինեաններուն տանն ու եղբօրը մէջ մնացաւ, և մինչև աչքը ինկած կը նայէր թշնամեաց պատուհաններուն վրայ: Տեսաւ որ պատնէշով ամրացուցեր էին, և պատուհաններուն վարի կողմը մեծ կոճղերով գոցելով՝ վերերէն նեղ ծակեր բացեր էին, որպէս զի եթէ յարձակմունք ըլլայ վրանին՝ կարենան ապահովութեամբ յարձակողներուն վրայ հրացան պարպել:

— Վա՜յ մայրիկ, ըսաւ Աղաւնի: Տես, եղբայրս ալ՛, սկսեր են ներս քաշուիլ. բայց օր մը պէտք է դուրս ելլեն:

Օրուան հրապարակին հարաւային կողմէն անցնելը մեծ տպաւորութիւն ըրաւ Բիէզրանէրայի բնակչաց վրայ, և յանդգնութիւն նկատուեցաւ: Չեզոք կեցողներուն համար մեծ խոհականութեան նշան մը եղաւ այս բանս՝ երեկուան կաղնի ծառին տակ ժողովուած ատեններին: — Աղէկ որ, կ'ըսէին, Գարիպալտինին տղաքը հոս չէին. չէ՛ նէ՝ անոնք հօրերնուն պէս համբերող չեն, և թերեւս իրենց թշնամւոյն յանդգնութիւնը կը պատժէին նոյն միջոցին: — Մ'խաբերինեց

պահեցէք, տղաք, ինչ որ ձեզի հիմա պիտի ըսեմ, շուրջեր ծերուն մէկն որ գեղին պատրիարքն էր. այսօր Աղաւնին գեղերը գիտեցի. անոր գլխուն մէջ բան մը կը պտըտի: Օդուն մէջ փառօք հաւերը կ'առնեմ. քիչ ատենէն պայծառանոցի մեր ամէն գնով պիտի ծախուի Բիէդրանէրայի մէջ:

Ժ.

Օրոց մեռած Հառակին մէջ թաղուած ըլլալով Հօրմէն, չէր ճանչցած զանիկայ: Տասնըհինգ տարուան էր Բիէդրանէրայէն Բիզա գացած մինչդեռ մամերն դրսերը Համար. Հոնկից ալ զինուորական զգեստ առեր էր, այն միջոցին որ Ներփուչչիոյ կայսերական դրօշակն Եւրոպիոյ մէջ կը քալեցնէր: Յամեր երկրի վրայ մէկ քանի անգամ տեսեր էր զանիկայ, և միայն 1845 տարւոյն այն փոշուին մէջ զանուեցաւ՝ որուն կը հրամայէր իր Հայրը: Բայց Հազարապետ զինուորական բարեկարգութեան ատակի պահանջով ըլլալով, իր որդւոյն Հետ ալ անանկ կը վարուէր

մանկարերով թէ ինչ ախորժ առի եր-
բոր պալլադա երգող օրիորդին հետ
երթայդ տեսայ՝ հրացանը ձեռքդ և
աչքդ խոժոռ. այն միջոցին ամբողջա-
նէն աւելի գորովալի երեւցար ինծի,..
քիչ մը ատենէն ալ: Երկայն կը գրեմ
թուղթս. որովհետեւ ձանձրացած եմ:
Քաղաքացւոց ճամբայ պիտի ելլէ. եր-
բոր դէպ՝ի ձեր լեռները ճամբայ ինկեր՝
մանաւանդ մարդ կը դրկենք առաջ խնա-
ցրնելու, և ես Ազատնի սիրտի աղաչեմ
որ պրոշեցիոյ մը պատրաստէ մեզի: Հիմ
կու հիմա եմ սիրալիր ողջոյն տուր ի-
րեն: Իրեն տուած զանակին սակայ կը
գործածեմ. մխարատանութեանց մը թըղ-
թերը կը կարեմ անով, բայց աչաւոր
զանակը չսիրեր այս պաշտօնին ու կը
պատրաստէ սիրտս: Բարեւն մնաս, պա-
րոն. Հայրս սիրոյ ողջոյն կը զրկէ քեզի:
Քաղաքացւոցին խօսքին մէկդի դիր, ա-
զէկ խորհրդատու է, և կարծեմ ձեր
պատճառաւ ճամբէն կը խոտորի: Գոր-
ծէ կ՚երթայ հիման քար մը անկելու. կը
մանկարերեմ որ փոխեմ պարապութիւն
մը սիրտի ըլլայ, և կը ցաւիմ որ չեմ
կրնար ներկայ ըլլալ: Կարծեմ պի-

ու սրտովս այսչափ երկայն գրելու․ բայց կը կրկնեմ որ ձանձրացած եմ, և նոյն պատճառին համար հրաման կու տամ որ կրցածիդ չափ երկայն պատասխան տաս։ Իրօք կը զարմանամ որ ինչուան հիմա չգրեցիր ինծի Բիէզրանեբայի պալատդ յաջողութեամբ հանելդ։

ԼԻԻԳԻԱ

Յ․ Գ․ Խնդրեմ մոռնալ զիր քաղաքաւեալին, և ըսածն ըրէ․ ինծի ախորժելի բան կ՚ընես»։

Օրայ երեք չորս անգամ կարդաց այս նամակը․ երբ երկայն պատասխան մը գրեց, և Ամէրիկայի տուաւ որ երթայ տանի գեղացւոյ մը որ նոյն գիշերը Այաչչից պիտի երթար։ Ալ անկէ երբ Յարբինչինեբուն վրայօք կասկածները բոլորովին փարատեցան մտքէն․ և ոչ ինչ աներկութեան հետք մնաց սրտին մէջ։ Քիչ մը ատեն սպասեց որ Բէլը վար իջնայ, և տեսնալով որ չգար՝ գնաց պառկելու։ Այդտեղ ծածուկ բաներ ապրողները Բիկինայի ու դրկեր էր․ և գիշերուան մեծ մասը հնոցի թղթեր

կարդալով անցուց։ Արշալոյսէն քիչ առաջ քանի մը պզտի խիճեր նետուեցան իրեն պատուհանին․ այս նշանը լսածին պէս՝ պարտէզն իջաւ, ծածուկ դուռ մը բացաւ, ժամերոտ դէմքով երկու մարդ խոթեց տունը․ և առջի հոգը խոհանոցը տանիլը զիրենք ու կերցընելն եղաւ։ Չենք կ՚իմացընենք ով էին այս մարդիկը։

## ԺԵ

Առաւօտը ժամը վեցին տուններ քաղաքապետին կողմանէ ծառայ մը եկաւ Օրսայի տան դուռը զարկաւ։ Ազաւնի բացաւ․ ծառան ըսաւ որ քաղաքապետը ճամբայ ելլելէն առաջ կըսպասէր Օրսայի։ Ազաւնի մէկէն անխռով պատասխանեց որ եղբայրը առտուէն վար իջնալով՝ ոտքը ճմլկցուցեր էր, և չկարենալով քալել՝ շատ շնորհակալ կ՚ըլլար թէ որ քաղաքապետն հաճէր իր տունը գալու։ Աս դէպքէն քիչ ետքը՝ Օրսայ վար իջաւ և հարցուց Ազաւնիին թէ քաղաքապետն ինչ ատեն էր որ եկեր իրեն։ — Հոս կ՚ուզէ տես֊

նուէրը հետդ , պատասխան տուաւ Ա-դամին ատամնց բնաւ այլայլելու : Կէս ժամի մը չափ Պարրիչինիներուն ամէն եկող չեղաւ . ան միջոցին Օրսոյ հարցուց քրոջը թէ նոր բան մը գտեր էր արդեօք . Ադամին պատասխանեց որ քաղաքապետին ատձև կ'բանէ : Ադամին արտաքուստ խաղաղ կը կեղծէր դէմքը : բայց երեսին գոյնէն և աչքերէն կ'իմացուէր խռոված ըլլալը :

Հօսկ ուրեմն Պարրիչինեայ տան դուռը բացուեցաւ . քաղաքապետը ճամբորդի զգեստով դուրս ելաւ , ետևէն գեղապետն և երկու որդիքը : Ինչպէս զարմացան Բեհզրանեայի ընտանիքն , որ սաստուրնէ 'ի վեր կը սպասէին դաստապետին երթը տեսնելու , երբ տեսան որ անիկայ Պարրիչինիներուն հետ հրապարակը չհասած կորեց անցաւ և տէլլա Ռեպպինեներուն տունը մտաւ :

— Կը հաշտուին իրարու հետ , զրուցեցին դեղին քաղաքապետէտը :

— Ես չէի զրուցեր ձեզի , բայց ծերունի մը , որ Օրսոյ շատ ժամանակ չամաք երկիր կեցած ըլլալով՝ սրտի մաղէ չէ :

— Բայց ան նայեցէք, գոչեց անե-լա Ռէպուպլիկաններուն կողմնակից մը, որ Պարրիչինիներին են իրեն գացողը. կ՚եր-թան ներսում խնդրելու իրմէ:

—Քաղաքապետն է երկու կողմիններուն ալ կանխըղըղնողը, կրկնեց ծերունին. այսօրուան օրս կարգածութիւն չէ մնա-ցած և երիտասարդաց ընաւ հոգը չէ իրենց հայր արինը:

Գաւառապետը զարմացաւ. Օրայէ աքէ վրայ ըլլալն և քաղէքը տեսնելով. Ազանի մէկէն ներսում խնդրեց սաս գուրգելուն, և վրայ բերաւ. — Թէ որ ուրիշ տան մը կեցած ըլլայի, եղբայրս երէկ մէկէն եկած կ՚ըլլար քեզի այցե-լութեան:

Օրայ շատ մնհացաւ այս սաստին հա-մար, բաղքեց որ ինքը մաս չունէր ա-նոր մէջ, և յանդիմանեց քոյրը: Քաղա-քապետն ու ծերունի Պարրիչինին հա-տացին իրեն խօսքին. բայց գեղապե-տին տղաքը չհամոզուեցան, և Օրլան-տաչչիոյ — Ասոնք հեռներնիս կը խաղան, ըսաւ: Իսկ Վինչենզէլլոյ ալ — Թէ որ իմ՝ քոյրս, գոչեց, տանել պաներ ը-նէր ինծի, ես կը սրբեցընէի իրեն:

Այս խօսքերը անհաճելի եղան Օրսոյի. և բարկութեամբ նայեցան իրարու երկու կողմէն ալ:

Ամէնքը նստան, բայց 'ի Ազատնիկէ՝ որ խոհանոցին դրան քով աթոռի վրայ կեցած էր. քաղաքապետն եղաւ խօսքը բացողը, և երկրին նախապաշարմունքներուն վրայ քանի մը խօսք կցկրցնելէն ետքը, ըսաւ որ ամէնէն սաստիկ արմատացած թշնամութիւններուն շատն իրարու միտքը չհասկնալէն ծագած է: Յետոյ գեղապետին դառնալով զրուցեց որ Գ. տէլլա Ռէպպիա ոչ երբեք կասկած մը ունեցեր էր Պարրիչինիի ազգատոհմին վրայ որ իր հօրը սպանութեան մէջ մաս ունեցած ըլլայ. միայն երկբայութիւն մը ունեցեր էր երկու ազգատոհմից մէջ եղած դատաստանին մէկ պարագային վրայօք, բայց հիմա նոր յայտնութիւններէն ճշմարտութիւնն սորվելով՝ ամէն տարակոյս մտքէն փարատեր էր, և կը փափաքեր դրացւոյ բարեկամութիւն կապել Գ. Պարրիչինիին և իրեն ընտանեացն հետ:

Օրսոյ բունի հաւանութեան նշան ըրաւ. Պարրիչինի քանի մը խօսք կակա-

ղեց զոր ոչ ոք լսեց, իսկ իր սրտերը ձե-ղունին գերաններուն կը նայէին։ Քա-ղաքապետն Օրսոյի դարձած՝ Պարրիչե-նիի բերնէն պիտի խօսէր. բայց Ազանի զգեստին գրպանէն մէկ քանի թղթեր հանելով՝ ծանրութեամբ մը մէջտեղն անցաւ ու ըսաւ.

— Շատ ուրախութիւն պիտի զգայ սիրտս՝ երբոր երկու ազգատոհմից մէջ հաշտութիւնը դառնի։ Բայց որպէս զի հաշտութիւնը սրտանց ըլլայ, պէտք է որ ունեցած տարակոյսներս փարա-տենք։ — Պ. քաղաքապետ, ես բնաւ չէի համոզած Թոմմաս Պիանքիի յայտա-րարութեանը, որովհետեւ գիտեմ՝ ինչ անզգամ՝ մարդ ըլլալը։ — Ես կ՚ըսէի որ թերեւս Պ. Պարրիչինիի որդիքը Պա-սդիայի բանտին մէջ տեսնուած ըլլան անոր հետ...

— Սուտ է, ընդհատեց Օրլանտուչ-չիոյ, ես չեմ տեսնուած հետը։

Ազանի արհամարհութեամբ նայե-ցաւ վրան, եւ շարունակեց խօսքը քա-ղաքապետին հետ.

— Ձեր բանը չէ այն գիտնալը Թոմ-մաս ապառնալիք գրեր էր Պ. Պարրի-

չինեայ՝ կատաղի ասպանակի մը բերնէն, որ իր Թէոդորոս եղբօրը ձեռքէն ջարդուց-քը չելլէ, որ իմ հայրս թեթև գնով ա-նոր վարձքի տուած էր:

— Այս այսպէս է, պատասխանեց քաղաքապետը:

— Անանկ անպիտան մարդ ըլլալէն ետքը՝ կարող էր Գիմէրի ասիկայ ալ ը-նելու, խորհրդածեց Օրայ՝ խարտա-լով քրոջը հանդարտ խոստովանութենէն:

— Կեղծեալ նամակը, շարունակեց Արամին՝ կամաց կամաց աչքերը կեն-դանութիւն առնելով, յուլիսի 11ին գրուած է: Թովմաս ան միջոցին իր եղ-բօրը քովն էր՝ ջարդուցքը:

— Այո, պատասխանեց քաղաքա-պետը քիչ մը շփոթած:

— Ուրեմն ինչ շահ ունէր Թովմաս Գիմէրի աս բանս ընելու, հարցուց Ա-րամին յաղթական ձայնիւ: Եղբօրը վարձքին ժամանակն անցեր էր. հայրս յուլիսի 1ին արձկեր էր զանիկայ: Ա-հաւասիկ հօրս հաշուեգիրքը, արձակ-ման թուղթը, և Այաչչիօյի մը նա-մակն որ նոր վարձուոր մը կ՚առաջար-կէր մեզի:

Այս բանով ձեռքի թուղթերը քա-ղաքապետին յանձնեց։

Ամենքը դարմացած լուռ կեցան վայր-կեան մը։ Գեղապետին երեսին գոյնը նետեց. Օրաց ընքունները խաղցընե-լով՝ քաղաքապետին մօտեցաւ ձեռքի թուղթերն առնելու կարդալու համար։

— Ատոնք հետեւնիս կը խաղան, ա-ղաղակեց դարձեալ Օդետուշշեոյ՝ բար-կութենէ ոտքի վրայ ելլելով։ Երթանք հայր հոսկէց. բնաւ հոս պէտք չէինք ե-կած ըլլալ։

Պարրէշէնի շուտով իր սովորական պաշտօնին կերպն առաւ. ուզեց քննել թուղթերը, զորոնք քաղաքապետն յանձ-նեց իրեն բութեամբ. և կանաչ ակնոց-ները ճակտին վրայ վերցընելով, անտար-բեր կերպով մը կարդաց. ան միջոցին Ադամնի կատաղի աչքերով կը դիտէր զինքը, նման մատակ վագրի մը՝ որ կը տեսնայ այծեամն մը դէպ 'ի իր ձագե-րուն մօտենալը։

— Անտարակոյս, ըսաւ Պարրէշէնի՝ ակնոցը վար առնելով և թուղթերը քա-ղաքապետին դարձընելով, Թովմաս ճանչնալով հանգուցեալ հաւատարակե-

ան սրտին ազնուութիւնը , յուսացեր է որ միտքը կը փոխէ ու չարձըկեր զին-քը . և իրաց ջաղացքն իրեն ձեռքը մնայ . բանել է որ . . .

— Ես զինքը ջաղացքը պահեցի , պա-տասխանեց Աղաւնի մէկ արհամարհոտ կերպով մը . հայրս մեռած ըլլալով , իմ մինակս անանկ կը պահանջէր՝ որ մեր մարդիկներուն գթամ :

— Սակայն Թովմաս կը խոստովանի , պատասխան տուաւ քաղաքապետը , որ նամակն ինքը գրած է . աս յայտնի բան է :

— Յայտնին ան է՝ որ աս նիւթիս մէջ մեծ անզգամութիւններ կան , դուր-ցեց Օրայ :

— Աս պարոններուն մէկ ուրիշ բան-ծին ալ դէմ պիտի խօսիմ , ըսաւ Ա-ղաւնի : — Աս ըսելով՝ խոհանոցին դու-ռը բացաւ , և ներս մտան Պրանտոլաշ-չիօ , ընկերն ու Պրուսպոյ շունը : Դըր-սանց զէնք չէր երևար երկու տա-ղակաց վրայ . և թէպէտ մեծարանքով գլուխնին բացին , կրնայ մակարերուիլ թէ իրենց յանկարծական ներկայու-թիւնն ինչ տպաւորութիւն ըրաւ ժո-

ցամերց վրայ. գեղապետը փախէն փոր կ'լինար, բայց մէկէն ոտքը վրան փակերով՝ բռնեցին, և ձեռքերնին գրպաններն տարին՝ դանակնին դուրս հանելու համար. դատաւորը դէպ 'ի դուռը սկսաւ երթալ, իսկ Օրսոյ Պրանտոլաչչիոյի վզնոցէն բռնած՝ Ինչու համար հոս եկեր ես, անզգամ՝ աղաղակեց:

— Ուղղայն է սակայ, պոռաց գեղապետն ու կը ջանար դուռը բանալու. բայց Մաւէրիոս դրսէն կղպեր էր դանակով՝ սպասեակներուն հրամայելով, ինչպէս որ վերջէն իմացուեցաւ:

— Աղէկ մտածէ, բա Պրանտոլաչչիոյ, մի փախնար ինծմէ. ես եմ, բայց սատանայի չեմ՝ նմանիր: Մենք դէշ դիտաւորութեամբ եկած չենք հոս, հապա իբրև միայ. քեզ անունով, ժողովրդապետս, դու խօսէ սանոց հետ:

— Պարոն քաղաքապետ, բաւ մեր աստուածը, իմ անուանս ձերոգամերդ Գասպրիգանի է, բայց ժողովրդապետն կ'ըսեն ինծի: Ազատի ինծմէ տեղեկութիւն ուզեց Թովմաս Պիարտի անուամբ մէկուն վրայ, որուն հետ բռնուած էի Պաղերմոյի մէջ իրեք շաբաթ առաջ: Ըսածի իմ տեղեկութիւնս...

— Խնդրեմ մի աշխատիր տեղեկութիւնք տալու, պատասխանեց քաղաքապետը. քեզի պէս մարդէն պէտք չունիմ բան լսելու : . . . Գ. տէլլա Ռէպպիա, անանկ կը կարծեմ որ դու մասն չունիս այս դաւաճանութեան մէջ. բայց տէր չես տանդ մէջ. բանալ տուր դուռը : Ետքը քոյրդ պէտք է որ համար տայ աւազակներու հետ ունեցած յարաբերութեանցը վրայօք :

— Գ. քաղաքապետ, պատասխանեց Աղաւնի, կ'աղաչեմ մտիկ ըրէ սա մարդուն բաները : Դու հոս եկած ես ամենուն արդարութիւն ընելու համար, ուրով պարտական ես ճշմարտութեան տեղեկանալու : Խօսէ, Ձիօգանդօ Գասդրիգօնի :

— Մտիկ մի ըներ, միաբերան աղաղակեցին երեք Պարրիչինիները :

— Թէ որ ամէնքը միատեղ խօսին, ըսաւ աւազակը ծաղրելով, իրարու ըսածները չենք իմանար : Ըստի խօսքիս դառնալով, բանտին մէջ ինծի հետ Թովմաս ալ կը գտնուէր. և ստէպ Գ. Օռլանտուչչիոյ իրեն այցելութեան կու գար :

— Սուտ է, պոռացին միաձայն երկու եղբարք :

— Երկու անգամ՝ ժխտեցի՝ հաստատել է, պոռչեց Գասպարեանը : Թովմասի քով ստակ կար. անոր համար աղէկ կ'ուտէր ու կը խմէր : Ես ալ՝ չհասկը խոստովանիմ՝ միշտ աղէկ ուտելը կ'ախորժիմ, և թէպէտ կը խորշէի ան անզգամին ընկերութենէն, սակայն չկըմացայ ու խել մը անգամ հետը սեղան նստայ : Երախտագիտութեան համար առաջարկեցի իրեն որ հետս փախչի քաղաքէն : Թովմաս յանձն չառաւ, ըսելով որ իրեն բանը ապահով էր, որ Պարրիչին փաստաբանը դատաւորներուն հետ իր վրայօքը խօսեր էր, և թէ ձեռան մէջ մաքուր պիտի ելլէր քաղաքէն, դըրամն ալ առնելով : Իսկ ես պատշաճ սեպեցի աներեւոյթ ըլլալ քաղաքէն : Լմըն-ցուցի բանկէս :

— Աս մարդուն բամբասանքը բոլոր սուտ են, կրկնեց հաստատութեամբ Օղլանտուշչիյ : Թէ որ բաց տեղ եղած ըլլայինք՝ իւրաքանչիւրնիս իրեն հրապանակը, ատանկ չէր կրնար խօսիլ :

— Անմիտ խօսք, ըսաւ Պրանտուշչիյ : Նայէ, Օղլանտուշչիյ, ժողովրդապետին հետ չաւրուիս :

— Վերջապէս թող պիտի չտամ, Պ. ակլըս Աէպպէտա, որ դուրս ելլեմ, աղա-ղակեց քաղաքապետը՝ բարեկամութենէն ասքը դեմին դարձնելով:

— Սամէրիա, Սամէրիա, պոռաց Օր-այ. բաց դուռը, դեռինն մնցնիս:

— Վայրկեան մը կեցէք, ըսաւ Պրան-տուրաշչիոյ. առաջ մենք պիտի ելլենք մեր կողմէն: Պ. քաղաքապետ, բարե-կամաց սովորութիւն է որ իրարմէ բաժնուելու ատեններնին՝ կէս ժամ իրա-րու մէջէ կու տան:

Քաղաքապետան արհամարհութեամբ մը նայեցաւ վրան:

— Ծառայ եմ ամենուդ, ըսաւ Պրան-տուրաշչիոյ: Եթէ ձեռքն երկնցնելով՝ թեզ տեսնամ՝ Պրուայոյ, ըսաւ չանը, քաղաքապետին համար ցաւէ մէյ մը:

Տունը ցատքեց. և տղաքներուն ա-ռաջարկեցինաններու խուճանցէն իրենց ձեռքերն ու պարտիզէն փախչելու. հա-քը ուլելու ատր ձայն մը լսուեցաւ և ամենքիջապէս որոհին դուռը բացուեցաւ՝ իրրև ինքիրմէ:

— Պ. Պարրիշինի, ըսաւ Օրայ բար-կութիւնը չափաւորելով, ես զքեզ նա-

մէկ խարդախող կը սեպեմ. այսօր իսկ բողոք պիտի խրկեմ Թագաւորին գործակատարին, ամբաստանելով զքեզ միանգամայն իբրեւ դաւակից Պիանքիի Հետ։ Թերեւս ուրիշ ծանրագոյն բաներ մ'ալ ընեմ քեզի դէմ։

— Իսկ ես ալ, Պ. տէլլա Ռեպպիա, զրուցեց փաստաբանը, պիտի բողոքեմ քեզի դէմ՝ մեզի դարան դնելուդ եւ աւազակաց Հետ դաւակցութիւն ընելուդ Համար։ Առ այժմ քաղաքապետը զինուորաց ձեռք կը յանձնէ անշուշտ ըզքեզ։

— Քաղաքապետն իրեն պարտքը պիտի ընէ, բայց անիկայ խասութեամբ։ Պիտի Հսկէ որ խաղաղութիւնը չվրդովի Բիէթրանէրայի մէջ. եւ արդարութիւն պիտի ընէ։ Ամենուդ Հետ կը խօսիմ, պարոնայք։

Փաստաբանն ու Վինչէնզէլլոյ արդէն դրանէն դուրս ելեր էին, եւ Օռլանտուչչիոյ դէպ 'ի ետ ետ քաշուելով դուրս ելլելու վրայ էր. բայց Օրսօ ցած ձայնով ըսաւ իրեն. — Հայրդ ծեր է, ապտակ մը զարնելու ըլլայի՝ նէ՝ կը ջախջախէի. անոր Համար վրէժս ձեզմէ պիտի առնեմ, քեզմէ ու եղբօրմէդ։

Օսմանցիներուն պատասխան տալու տեղ՝ դանակը քաշեց ու կատաղութեամբ Օրայի վրայ յարձակեցաւ. բայց Ազատի մէկէն թեւը բռնեց պրկեց, իսկ Օրայ բռունցքը քիթին բերնին զարնելով՝ անանկ ետ հրեց, որ գնաց ուժով մը զարնուեցաւ դրան դարպին: Դանակը սահեցաւ Օսմանցիներուն ձեռքէն. բայց Վինչէնցոյ իր դանակը հանեց ու սրահը մնաց. Ազատի տեսածին պէս զանիկայ՝ վազեց հրացան մը առաւ, որով Վինչէնցոյ տեսաւ որ դիմացինն աւելի զօրաւոր էր: Նոյն միջոցին քաղաքապետը վրայ հասաւ ու կռուողներուն մէջ մտաւ: — Քիչ ատենէն քեզի կը սպաննէին՝ Օրա՛ Աման, պատճառ Օսմանցիներուն: Եւ ուժով մը սրահին դուռը քաշելով՝ բանալիով կղպեց, որպէս զի փախչելու ժամանակ ունենայ:

Օրայ ու քաղաքապետը քառորդ մը լուռ կեցան՝ իւրաքանչիւրը սենեկին մէկ ծայրը: Ազատի, որուն ճակատը դաթացեր էր ըրած յաղթանակին պատճառաւ, փոփոխակի կը նայէր անոնց վրայ, ան հրացանին վրայ կռթընած՝ որ յաղթութիւնն ապահով տուեր էր:

— Այս ինչ երկեր, այս ինչ երկեր, աղաղակեց Հուսկ ուրեմն քաղաքապետը՝ թափով մի աթոռի վրայ ինկելով: Պ. ակլիս Օեջալլիս, յանցաւոր եմ. խօսք տուր ինծի որ ժ և է բանութենէ ետ կենաս, և պատասխան որ արդարութիւնն որոշէ աս անիծած խնդիրը:

— Այո, Պ. քաղաքապետ, յանցաւոր եմ՝ որ ձեր փեսացի անդրանիկն. բայց եղածն եղած է, և չեմ՝ կրնար դըրանալ իրեն ինծմէ ուզած փոխարէնը:

— Չէ չէ, ինքը միտք չունի մենամարտելու հետ... Բայց թէ որ բարանէնէ գրեց,.. Ճշմարիտն ըսելով՝ բաւական աւելի տայիր:

— Զգուշութիւննիս կ՚ընենք, բաւ Աղաւնի:

— Օգնականաչէիր, բաւ Օրդայ, կըսբին ապայ մի կ՚երևայ ինծի, և չեմ կարծեր՝ Պ. քաղաքապետ, որ ցած միտքեր ունենայ: Շատ շուտով դանակը դուրս քաշեց. բայց թէ որ ես ալ իրեն տեղն ըլլայի՝ թերևս նոյնպէս ըրած կ՚ըլլայի. և շատ ուրախ եմ՝ որ քրոջս դանակը փախուց և տկար չէ եղեր:

— Կ՚աղաչեմ՝ որ չմենամարտիք իրարու հետ, գոչեց քաղաքապետը:

— Գիտնաս, պարոն, որ պատուոյ խնդրի մէջ իմ գիտակցութեանս ձայնին միայն մտիկ կ՚ընեմ։

— Կ՚ըսեմ՝ քեզի որ պէտի չմնամարտիք։

— Կրնաս զիս բանտել (թէ որ թողում որ զիս բանէք), բայց ատոր ուրիշ բան չես ընել՝ բայց եթէ ուշացընել այն բանին որ անհրաժեշտ պիտի ըլլայ։

— Թէ որ եղբայրս բանտել տաս, ըսաւ Աղամնի, գեղին կէսն իսկոյն կողմը կը բռնէ, ան ատեն տեսնաս թէ ինչ հրացաններ կը պարպուին։

— Առաջուց կ՚իմացընեմ՝ քեզի, պարոն, զուրցեց Օրայ, որ եթէ Պ. Պարրիչինի իր գեղապետի իշխանութեանը գործածելով՝ ուզենայ զիս բանտել, կը պաշտպանեմ անձիս։

— Այսօրուընէ սկսեալ Պ. Պարրիչինի իր պաշտօնէն կախեալ է, զուրցեց քաղաքապետը... յուսամ որ ինքզինքը կ՚արդարացընէ։... Պ. տէր Ռէպպիա, քեզի բան մը պիտի յանձնեմ՝ որ շատ փոքր բան է. տունդ հանդարտ կեցիր, ինչուան որ Գորդէէն դառնամ։

իրեկը որ միայն պիտի կենամ հոն, եւ_
քը թագաւորական գործակատարին
հետ կուգամ, և ան ատեն բոլորովին
կը լուծանենք այս անախորժ խնդիրը։
Կը խոստանաս ինծի որ ինչուան այն ա_
տեն մը և է թշնամութենէ ետ կենաս։

— Ձեզ կրնար խոստանալ, պարոն,
թէ որ Օսմանտաշչիոյ ուզէ որ ինծի
հանդիպի, ինչպէս որ կը կարծեմ։

— Ի՞նչ. դու՝ դատողութեանդ զինուորա_
կանդ՝ կ'ուզես մենամարտիլ այնպիսի
մէկու մը հետ, որուն հայրը խարդա_
խող կը սեպես։

— Բայց զարկի իրեն։

— Թէ որ ծառայիդ զարկած ըլլայիր
և ինքը փոխարէն ուզէր, կը մենամար_
տէիր հետը։ Թո՛ղ սա խօսքերը, Պ. Օր_
սայ։ . . . Բայց ես կը դիմանիմ քեզի, ա_
շատ աւելի թեթեւ բան կը խնդրեմ քեզ_
մէ. Օսմանտաշչիոյի եանէն մի՛ իջնար . . .
եւս թէ որ կանչէ զքեզ, թող կուտամ
որ մենամարտիս։

— Ապահով եմ որ կը կանչէ. բայց
կը խոստանամ նորէն սպասել չզարնե_
լու իրեն՝ որպէս զի չբանադատուի մե_
նամարտելու հետս։

— Այս ինչ երկիր, կրկնեց քաղա-քապետը մեր վար քաղելով աւագու-թեամբ. Երբ պիտի դառնա՞մ Գաղղիա:

— Պ. քաղաքապետ, ըսաւ Աղաւնի անոյշ ձայնով մը, ժամանակը ուշ է. մեր քովը նախաճաշիկ ընելու յանձն կ'առնես:

Քաղաքապետը խնդաց. և Շատ խոկ կեցայ հոս, ըսաւ... կրնան կողմնա-կցութեան տալ աս բանս:... Ա՜հ ան օրհնած հինան քաղը. պէտք է որ եր-թամ:... Օրիորդ տէկլա Բեզպիա, ինչպիսի թշուառութիւններ արդեօք պիտի ծագին այսօր քու պատճառաւդ:

— Ձանէ կը հաւտաս անշուշտ՝ Պ. քա-ղաքապետ, գոչեց Օրսոյ, որ քիչ ատենիկ համբուրուած է իր կործկըլե-րուն վրայ, և ապահով եմ որ դու ալ արդարացի կը սեպես զանոնք:

— Մնաս բարով՝ պարոն, ըսաւ քա-ղաքապետը: Երթամ խնդց տամ զի-նուորական պահպանութեան զինուորին որ ձեր վրայ հսկէ:

Երբոր քաղաքապետը գնաց, — Օր-սոյ, ըսաւ Աղաւնի, հոս ցամաք երկիր մի կարծեր դքեզ. Օսպանապաշիկ չըի-

տեր թէ մենամարտութիւնն ինչ է, և պէտք չէ որ այնպիսի մահուամբ մեռնի անանուն ցած մարդը ։

— Սիրելի Ագանես, դու կտրիճ կին ես. դու զիս խալըսեցիր Օսմանտաշչիյի դանակէն ։ Բայց ուրիշ բաներու մէջ թող տուր որ ես գործեմ. բաներ կան որ քու գործդ չէ ։ Նախաճաշիկս պատրաստէ. և երբոր քաղաքապետը ճամբայ ելլէ, ինծի խրկէ պզտի Թիլլիման, որ կարծեմ շատ աղէկ կը կատարէ իրեն տրուած յանձնարարութիւնները ։ Պէտք է որ մէկ նամակս տանի ։

Մինչդեռ Ագանի նախաճաշիկին պատրաստութեանը կը հոգէր, Օրայ իր սենեակը գնաց ու հետևեալ նամակը գրեց.

« Անտարակոյս շուտով կ՚ուզես ինծի հանդիպիլ. ես ալ նոյնպէս կ՚ուզեմ։ Վաղը առաւօտ ժամը վեցին Աքուավիլա ձորին մէջ կրնանք զիրար գտնալ։ Ես շատ ճարտար եմ ատրճանակ պարպելու, անոր համար այդ զէնքը չեմ առաջարկեր քեզի։ Կ՚ըսեն թէ աղէկ հրացան կը պարպես. ուստի զէնքերնիս երկու բերնով հրացան ըլլայ։ Ես հետս հոս տեղի գեղացիներէն մէկը կ՚առնեմ։ Թէ որ եղբայրդ կ՚ուզէ հետդ ընկերել՝ եր-

երրորդ վիրայ մըն ալ տու և առաջուց իմացուր ինծի, որ ան ատէն ես ալ ուրիշ վիրայ մը տանիմ» :

ՕՐՍՈՅ–ԱՆՏՈՆ ՏԷԼԼԱ ՌԷՊՊԻԱ

Քաղաքապետը ժամ մը գեղապետին փոխանորդին քովը կենալէն, և քանի մը վայրկեան ալ Պարրիչինիներուն տունը անցընելէն ետքը, դէպ 'ի Գօրթէ ճամբայ ելաւ՝ մէկ զինուորի մը ընկերութեամբ : Քառորդ մը ետքը, Քիլինա վերոյիշեալ նամակը տարաւ Օրլանտուչչիոյի ձեռքը յանձնեց :

Պատասխանն ինչուան իրիկուն ուշացաւ : Նամակը երիտասարդաց հայրը գրած էր, որուն մէջ կ'իմացընէր Օրսոյի որ թագաւորին գործակատարին ղրկել յանձնէր իր որդւոյն գրուած ըսպառնալեաց թուղթը. և կ'աւելցընէր բանը. — Ես խղճմտանքիս վրայ ապահով ըլլալով, կը սպասեմ որ արդարութիւնը քու զրպարտութեանցդ վրայ վճիռ կտրէ :

Սակայն Աղաւնի հինգ վեց հովիւ կանչեց որոնք եկան պահապանութիւն ընելու տէլլա Ռէպպիաներուն աշտարակին առջևը : Թէպէտ Օրսոյ կ'ընդդի-

մինար, Հրապարակին վրայ նայող պա-
տուհաններուն վարի կողմը կոճղերով
գոցեցին՝ վերը նեղ ծակեր թողլով. և
բոլոր նոյն երեկունը գեղին բնակիչնե-
րէն շատ անձինք կ՚առաջարկէին իրեն՝
ձեռքերնէն եկածը ընելու: Նոյն իսկ ժո-
ղովրդապետ ատաղակէն նամակ մը ե-
կաւ, որ կը խոստանար իր և Պրանտո-
լաչչիայի կողմէն օգնութեան հասնելու,
թէ որ գեղապետը գինուոր գործածէր:
Նամակին վերջը հետևեալ յետ գրու-
թեանն ըրեր էր. «Կ՚ուզէի իմանալ
թէ քաղաքապետին հանձնեցաւ արդեօք
Պրուսացւոյ շան կրթութեանը, զոր բարե-
կամս ինչպէս որ պէտք է կը դաստիա-
րակէ: Բիլինայէն վերջը՝ անոր պէս հրա-
աշկերտ չեմ ճանչնար, միանգամայն
շատ յարմարութիւն կը ցուցընէ»:

## ԺԶ

Երկրորդ օրն առանց թշնամութեան
անցաւ. Օրսոյ առնէն չեղաւ, և Գազլիկչի-
նիներուն դուռն ինչուան երեկուն գոց
մնաց: Պաշտպանութեան համար ձգուած
քանի մը գինուորները Հրապարակին և

գեղին շրջակայից մէջ վեր վար կը պտըտէին. իսկ գեղապետին փոխանորդն ալ իր պաշտօնին նշանազգեստը վրայէն չէր հաներ:

Ընթրիքի միջոց Արսանի ուրախութեամբ ցուցուց Օրսայի Նէվիլ օրիորդէն ընդունած հետեւեալ նամակը.

Ազնիւ Արսանի, մեծաւ գոհունակութեամբ իմացայ եղբօրդ նամակէն որ ձեր թշնամութիւնները լմնցեր են. ընդունէ իմ ուրախակցութիւնս: Հայրս ալ Այաչչիոյ չկրնար կենալ՝ քանի որ եղբայրդ քովը չէ որ պատերազմներու վրայ խօսի և հետը որսայ: Այսօր ճամբայ պիտի ելլենք, և գիշերն ազգականիդ քով պիտի անցընենք, որուն նամակ մը տուիր մեզի: Իսկ միւս օր ժամը տասնըմէկին ատենները պիտի գամ քեզի պրուչչոյէ համ առնելու, որ կ՚ըսես թէ լեռը ջնուածը քաղաքը ջնուածէն շատ ազնիւ է:

Ողջ լեր, ազնիւ Արսանի.

Բարեկամդ

ԼԻԴԻԱ ՆԷՎԻԼ

— Ըսել է որ իմ երկրորդ նամակս չէ ընդունած, գոչեց Օրսօ:

— Իր նամակին թուականէն կը տեսնես որ Լիդիա հանըման եղած պիտոր

ըլլայ՝ քու նամակդ Այաշէն հասած միջոցը։ Մէջը գրած էիր որ չգայ հոս։

— Իմացուցի իրեն որ պաշարման վիճակի մէջ ենք։ Կարծեմ մարդ ընդունելու ատեն չէ։

— Թէհ. Անգղիացիք նորօրինակ մարդիկ են. ան իրիկունն որ Լիւդիոյ աննաւակը պառկեցայ, բաւ ինծի որ կը ցաւէր թէ որ մեծ վրէժխնդրութիւն մը չառնած Գորտիդայէն երթար։ Թէ որ կ՚ուզես, Օրայ, կրնայինք իրենց ներկայութեան առջև մեր թշնամեաց ան վրայ յարձակմունք մը տալ։

— Գիտես, բաւ Օրայ, որ դու սխալմամբ կնիկ ծներ ես. աղէկ զինուորական մը կ՚ըլլայիր։

— Երնայ ըլլայ։ Հիմա երթամ պտըտչինոց չինեմ։

— Աւելորդ է։ Մարդ մը խորհելու է որ երթայ իմաց տայ իրենց ու խափանէ գալուստնին՝ քանի որ ճամբայ չեն ելած։

— Այս փոթորիկով մարդ կ՚ուզես խըրկել, որ հեղեղը առնէ տանի զինքը։ Ի՞նչպէս կը ցաւիմ խեղճ առաղակներուն վրայ. աղէկ որ հասա վերադարձու-

ներ ունին։ Գիտեմ ինչ կրնաս ընել, Օրայ. թէ որ փոթորիկը դադրի, վաղը առաւօտ մութն 'ի լոյս ճամբայ ելիր, որ կարենաս մեր բարեկամին քով հա-նիլ, քանի որ անոնք իրմէն չեն բաժ-նուած։ Ապահովապէս կրնաս հասնիլ, որովհետեւ Լիւզիա մեզմէ ուշ կ'ելլէ ան-կողինէն։ Երբ պատմես հոն հանդիպած բաները, եւ թէ որ դիտաւորութիւննին գալ է, սիրով կ'ընդունինք զիրենք։

Օրայ հաւանեցաւ այս բանին. եւ Ա-դանի քանի մը վայրկեան լռութենէ ետքը ըսաւ.

— Թերեւս կարծես որ կատակի հա-մար ըսի որ կրնայինք Պարրիչէններուն տան վրայ յարձակիլ. բայց չես գիտեր որ մենք զօրաւոր ենք, մէկի դէմ եր-կուք ենք. որովհետեւ քանի որ քաղա-քապետը պաշտօնէն կախեց գեղապետ-ը, բոլոր գեղացիք մեր կողմն են. կըր-նանք զանոնք կոտոր կոտոր ընել. եւ դիւ-րին է տուիծ մը գտնալ։ Թէ որ ուզես կրնամ ես աղբիւրին քով երթալ եւ ի-րենց կնիկները ծառայ ընել. Պարրիչէնե-ները զուր կ'ելլեն... կամ թերեւս, ո-րովհետեւ փառ մարդիկ են, իրենց պա-

տուհաններէն վրաս հրացան կը պարպին, և անտարակոյս սխալ նշան կ'առնեն: Ալ ան տուն ուրիշ բան պէտք չէ. իրենք են առաջին կռուողը: Վնասը՝ պարզ յաղթութիւններուն է. որովհետեւ չփոթութեան մը մէջ ով կրնայ ըսել թէ սա անձը հրացան պարպեց: Հաւատա՛, Օրա՛յ, խօսքիս. սեւազգեստ դատաւորները կու գան՝ ճերմակ թըղթերը սեւով կ'աղտոտեն, խել մը փուճ խօսքեր կ'ըսեն, և ծայրը բան չըներ: Ծերունի աղուէսը կերպը կը գտնար ցը-րել ամեն ատողէր ցուցընելու անոնց: ՈՀ, թէ որ քաղաքապետը Վինչէնդէլոյի աղջիկը չըլլար, հիմա անոնցմէ մէկ հատ մը պակաս եղած կ'ըլլար:

Այս խօսքերն ամենայն պաղ արեամբ կ'ըսէր Ադամնի՝ ինչպէս որ վայրկեան մը առաջ պուռչչինիի վրայ խօսեր էր: Օրայ ապշած՝ վախով մը կը նայէր քրոջը վրայ. ետքը ոտքի վրայ ելլելով,

— Ադամնի, բան, վախեմ՞ թէ դու-տասանոյ մին ես կնոջ կերպարանք առած. բայց հոգ մի ըներ. թէ որ ես չկարենամ՝ կախել տալ Պարրիչինիները, ուրիշ կերպով մը կը հոգամ զիրենք:

— Որչափ շատ ըլլայ՝ այնչափ աղէկ է, պատասխանեց Աղաւնի հառաչելով։ Ո՞ր ձին կը հեծնաս փոքր, Օրս՛ Աննան։

— Սեւը։ Ինչո՞ւ կը հարցնես։

— Որպէս զի գարի կերցնեմ։

Օրոց իր սենեակը քաշուեցաւ. Աղաւնի պատկերը երկեց զՍամերիա ու հովիւները, և մինակ մնաց խոհանոցին մէջ, ուր կը պատրաստէր ըրուշչինե։ Մերթ ընդ մերթ ականջ կը դնէր և կը սպասէր անհամբերութեամբ որ եղբայրը դառնի։ Երբոր յուսաց որ քուն եղած կ'ըլլայ, դանակ մը առաւ ձեռքը, փորձեց նայեցաւ սուր ըլլալը, և զգուշութեամբ մը պարտէզին ելաւ, ուր ցանկապատ, տեղւոյ մը մէջ դրած էին ձիերը. որովհետեւ Գորովգայի ձիերը ախոռը չէին դրուէր, առհասարակ դաշտի մէջ կը թողուն ձիերը, ուր պէտք է իրենց սնունդը գտնան և ցրտէն ու անձրեւէն պաշտպանուին։ Աղաւնի նոյնպէս ըզգուշութեամբ ցանկապատ անցաւ միասա, և մեղմ՝ ձայնով մը սուլածին պէս՝ ձիերը քովը ժողվուեցան, որոնց առէյ հաց ու աղ կը տանէր։ Երբոր սև ձին քովը մօտեցաւ, ուժով մը բաշէն բռ-

նեց և ակռանջը դանակովը ճեղքեց: Կեն-դանին սաստիկ մը ցատքեց ու փախաւ՝ սուր ձայնով մը պոռալով: Աղաւնի սիր-տը դող երբոր պարտէզը կը դառնար, Օրայ բացաւ պատուհանն ու Ո՞վ է ան՝ պոռաց: Աղաւնի լսեց որ Օրայ կը լե-ցընէր հրացանը. բարեբաղդաբար պար-տիզին դուռը մութէն ծածկուած էր: Քիչ ատենէն եղբօրը սենեակը լոյս ա-ռաւ. Մէկէն ցանկին դուռը գոցեց, և պատերուն քովէն քալելով, որպէս զի զգեստը ծառերուն մութ ստուերներուն հետ խառնուելով՝ չտեսնուի, Օրայէն առաջ կրցաւ խոհանոցը հասնիլ:

— Ի՞նչ կայ, հարցուց Աղաւնի:

— Ինծի երեւցաւ, պատասխանեց Օր-այ, որ պարտիզին դուռը կը բանան:

— Անկարելի բան է. շունը հաջած կ'ըլլար: Բայց թէ որ կ'ուզես նէ, եր-թանք տեսնենք:

Օրայ շրջան մը ըրաւ պարտիզին մէջ, և տեսնելով որ արտաքին դուռն աղէկ գոցուած է, քիչ մը ամօթով մնաց ու սկսաւ դէպ 'ի սենեակին երթալ:

— Ուրախ եմ, ըսաւ Աղաւնի, որ կը խոհեմնաս, ինչպէս որ վիճակդ կը պա-հանջէ:

— Դու զիս կը կատարելագործես, պատասխանեց Օրսոյ: Գիշեր բարի:

Առաւօտն արշալուսոյն Օրսոյ ոտքի վրայ էր՝ պատրաստ ճամբայ ելլելու. և աճապարելով սուրճ խմելու միջոցը՝ Հովիւ մը գնաց թամբելու ան ձին: Այդ մարդը չկրցաւ սանձ դնել կենդանւոյն բերնին, որովհետև գիշերուան վէրքին ցաւը կրելով ու միւս ականջին համար վախնալով՝ ձին վեր կը ցատքէր, կիցեր կը զարնէր, կը խրխնջար, միով բանիւ՝ բռածը չէր մնար:

— Քեզ անանամ՝ շուտ ըրէ, աղաղակեց Օրսոյ:

— Ա՛հ, Օրս՛ Անտոն, ա՛հ, Օրս՛ Անտոն, պոռաց Հովիւը:

— Ի՞նչ կայ, հարցուց Աղաւնի:

Ամէնքը ձիուն քով մօտեցան, և անոր ճղքած ականջը տեսնելով՝ բարկութիւնէն միաբերան պոռացին: Գիտնալու է որ Գորսիկացւոց մէջ թշնամւոյն ձին վիրաւորելը՝ վրէժխնդրութիւն և մահուան սպառնալիք է. և կ'ըսեն թէ հրացանի հարուած մը միայն կրնայ այդ յանցանքը սրբել: Թէպէտ Օրսոյ ուրիշներէ աւելի նուազ կը զգար

այդ Նախատինքը՝ երկար ատեն ցամաք երկիր ապրած ըլլալով, սակայն թէ որ այդ վայրկենէն Պարբեշենիներուն կողմէն մէկը դիմացն ելած ըլլար, համանակամ էր որ մէկէն վրէժը առնէր։ — Վա՜յ անզգամներ, ըսաւ Օրայ. խեղճ կենդանիէն վրէժնին կ'առնեն, և չեն համարձակիր դիմացս ելլելու։

— Ի՞նչ բանի կը սպասենք, պոռաց Ադանի աստուածութեանը. կու գան առանք զրգռելու զմեզ, ձիերնիս վիրաւորելու, և մենք անշարժ պիտի կենանք։ Մարդիկ էք դուք։

— Վրէժխնդրութիւն, պատասխանեցին հովիւները։ Զէն դեղին մէջ ալաղացընենք, և տուներնուն վրայ յարձակինք։

— Իրենց աշտարակին մօտ յարդնոց մը կայ, ըսաւ Բօլոյ Կրիֆիթ. մէկէն բռնկցնել կու տամ ես՝ անիկայ։ — Ուրիշ մը կ'ուզէր երթալ եկեղեցւոյն զանգակատան առնդուխը բերել. երրորդ մըն ալ կ'ըսէր, գերանով մը՝ որ հրապարակին վրայ կը գտնուէր, Պարբեշենիներուն դուռը կոտրել։ Այն միջոցին Ադանի ըսաւ իր արբանեկաց որ

գործի ձեռք զարնելէ առաջ՝ ամենուն մէյմէկ մեծ գաւաթով անխառնախառն ըմպելիք պիտի տար:

Սակայն ինչ տպաւորութիւն որ յա-ռաջացած էր Արամին որ այդ դէպքն ընէր Օրոյի վրայ, չանմոռնալու վրան. որով-հետև փոքր և ցած վրէժխնդրութիւն մը նկատելով՝ սիրտը արհամարհել իր թըշ-նամիքը, և կ'ըսէր մտքէն թէ այդպիսի անձինք արժանի չեն իրենց հետ կռուե-լու: Երբոր հովիւներուն ձայնը քիչ մը ցածցաւ, խնդրեց Օրոյ ամենց որ ի-րենց զինուորութիւնին մէկդի ձգեն, և թէ արդարութիւնն իր ձեռն առա-ջին վրէժը պիտի առնէր: — Ես եմ՝ հոս տէրը, խստութեամբ մը վրայ բերաւ, և կ'ուզեմ որ հնազանդիք ինծի: Ով որ դեռ խօսք կը բանայ ապամններու կամ՝ այ-բերու, ես կը սպաննեմ՝ զանիկայ: Թամ-բեցէք մոխրագոյն ձին:

— Ի՞նչ, ըսաւ Արամին Օրոյի՝ մէկդի քաշելով զինքը, այդպէս թող կուտաս որ նախատեն զմեզ: Հօրեղբայրս կենդա-նութեան ատեն՝ Պարրիչենիները բը-նաւ չէին կրնար համարձակիլ մեր կեն-դանիները վիրաւորելու:

— Ես քեզի խօսք կու տամ՝ որ պէտի զղջան . բայց զինուորաց և բանտապանաց կ'ըսեմ պատժել անանկ վատ մարդիկն որ կենդանեաց վրայ միայն երթալու կը համարձակին : Ըսէ արդէն քեզի , արդարութիւնը պէտի վրէժս առնէ անոնցմէ . . . ապա թէ ոչ . . . կը ցուցնեմ քեզի թէ ում որդին եմ :

— Համբերութիւն , գուրյեց Աղաւնի հառաչանօք :

— Աղէկ գիտնաս , քոյր իմ , շարունակեց Օրայ , որ եթէ 'ի դարձիս իմանամ՝ որ Պարբեչիններուն դէմ բան մը ըլլաւեր է , ոչ երբէք կը ներեմ քեզի :
— Եղբայր աւելի անոյշ ձայնով մը ըսաւ . Շատ հաւանական է որ հազարապետն ու աղջիկը հետս կը բերեմ՝ հանայէ որ իրենց սենեակները կարգի դրուին , նախաճաշն աղէկ ըլլայ , միով բանիւ՝ հիւրերնիս շատ դէշ բնակարան մը չգտնեն տուներնիս : Ե՛կ համբոյր մը տուր . քեզ տեսնամ՝ հանդարտ կենաս . ահա մխիթարդն ձին պատրաստ է :

— Օրայ , ըսաւ Աղաւնի , թող չեմ տար որ մինակ երթաս :

— Մարդու պէտք չունիմ , պատաս-

խանեց Օրսոյ, և ապահով եղիր որ թող չեմ՝ տար որ ականջս կտրեն։

— Ո՛հ, անկարելի է որ պատերազմի մէջէն թողում որ առանձին երթաս։ Է՛ Բոլո Գրիֆֆոյ, Ճիան Ֆրանսէ, Մէմմոյ, հրացաննիդ առէք. եղբօրս ընկերութիւն պիտի ընէք։

Քիչ մը ատեն հակառակելէ ետքը, Օրսոյ զիջաւ Ազաւնիին, և հովիւներէն զանոնք ընտրեց՝ որոնք ամենէն աւելի պատրաստ էին Պարրիչինիներուն վրայ յարձակելու. ետքը տուած պատուէրները նորէն կրկնելով քրոջն ու մնացող հովիւներուն, ճամբայ ելաւ, և խոտոր ընթացք մը բռնեց՝ Պարրիչինիներուն տանն առջևէն չանցնելու համար։

Բիէդրանէրայէն ելան և արագութեամբ ձիերնին կը փութցընէին. երբոր գետակ մը հասան, ծերունի Բոլո Գրիֆֆոն շատ մը խոզեր տեսաւ, որոնք տիղմին մէջ թաւալեր էին և կը վայելէին արևն ու ջրին զովութիւնը։ Մէկէն նշան առաւ ամենէն գէր խոզին, և հրացանը պարպածին պէս՝ սպաննեց զանիկայ։ Կենդանւոյն ընկերքն անմիջապէս կայծակի պէս արագութեամբ փա-

խառն, և թէպէտ միւս հովիւն ալ հրացան պարպեց վրանին, բայց անոնք անխօս ապաստանեցան անտառի մը մէջ։

— Ողորմելի մարդիկ, գոչեց Օրսայ. խոզերը փարատ կը կարծէք։

— Ոչ, Օրս՛ Անտոն, պատասխանեց Բօլոյ Նիքիֆօր, անանկ չէ, հապա այդ խոզերը փառապանքին են, ձիուն ականջին փոխարէնն ըրին։

— Ձեզի պէս անզգամներ, աղաղակեց Օրսայ բարկութենէն կրակ կտրած, դուք ալ մեր թշնամեաց ըրած ցածութեանը կը նմանիք։ Գացէք քովէս. ձեզի պէտք չունիմ. դուք խոզերուն հետ կռուելու կարիճ էք։ Կ'երդընում որ եթէ յանդգնիք հետս գալու, գլուխնիդ կը ջախջախեմ։

Երկու հովիւները ապուշ մնացին ու իրարու կը նայէին։ Օրսայ ոտքին մտրակներովը ձիուն փորին զարկաւ, և աներեւոյթ եղաւ։

— Տեսա՞ր հիմա, ըսաւ Բօլոյ Նիքիֆօր՝ ընկերոջը. եկո՛ւր սիրէ աս մարդիկներն որ այս կերպով կը վարուին հետդ։ Ասոր հայրը, հազարապետը, սրդողեցաւ քեզի՝ անգամ մը փառապանքին վրայ

հրացան չտեսնելու համար . . : անխելք եղար որ չպատրաստեցիր : . . . խակ որդին . . . տեսար ի՞նչ բրի խրեն համար . . . կը սպառնայ զլուխս ջախջախել , ինչպէս որ կը ջախջախեն դդումն ամօթ մը որ ա՛լ մէջը գինի չկրնար պահել : Ահա սանկ բաներ կը սորվին ցամաք երկիր , Մէմմոյ :

— Անանկ է . և թէ որ խնայուի որ դու սպաններ ես այդ խոզը , դատաստան կը բանտեն զքեզ , և Օրս՛ Անտոն չուզեր պաշտպանել զքեզ դատաստանաց առջին , և փաստաբանին տալու : Բարեկարգապահ մարդ չատեազքեզ , և սրբուհի Նէկա վասնզէն խալսեց զքեզ :

Քիչ մը առեն մտածելէն ետքը , երկու համբաներին որոշեցին որ ամենէն աւելի խոհեմ ճամբան խոզը փոսի մը մէջ նետելն էր . ինչպէս որ ըրին . բայց իւրաքանչիւրը մէյմէկ մեծ կտոր մէկդի դնելով խեղճ խոզին մսէն , որ տէլլա Ռէպպիաններուն և Պարրիչինիներուն ատելութեանը զոհ եղեր էր :

## Ժ.

Իր անհրահանգ ընկերներէն խայլ-ուելէն ետքը, Օրայ ճամբան կը շարունակէր, աւելի բարեկամները գտնալուն ուրախութեանը վրայ մտածելով, քան թէ թշնամիներուն իր առջեւ գտնալու վախէն պաշարուած։ — Պիտի բանադատուիմ՝ ան դատաստանին համար որ այդ ցածազգի Պարթեւներուն դէմ պիտի բանամ՝, կ՚ըսէր մտքէն, Պաղխա երթալու։ Ես ամթով Նէվիլ օրիորդին ընկերութիւն կ՚ընեմ՝ դէպ ՚ի Հոն երթալու. անկէց ալ կրնանք մէկտեղ Օրէցցայի ջրերուն երթալու։ Յանկարծ մանկութեան յիշատակները միտքն եկան ու յիշեց այն նկարակերպ տեղը. մտով ինքզինքը կանաչազարդ մարգագետնին մէջ դրաւ՝ ծեր շագանակի ծառերու քով։ Դալար խոտին վրայ, ու-սփռած կապոյտ ծաղիկները կարծես թէ աչքեր էին որ իրեն կը նայէին, կը տեսնէր զինքը իր քովը նստած, և մէկտեղ մտերմաբար կը խօսէին։ Այսպիսի քաղցր մտածութիւններ միտքին

մէջ յեղյեղելով, ուշադրութիւն չէր ը-
նէր քալած ճամբուն: Մէյ մ'ալ յան-
կարծ ձին կանկ առաւ. որովհետև պզ-
տի Չիլինան գինացն առեր էր ու սան-
ձէն բռներ:

— Ո՞ւր կ'երթաս, Օրս՛ Անթոն, ըսաւ
աղջիկը. չես գիտեր որ թշնամիդ հոս
մօտիկ է:

— Թշնամին, պատասխանեց Օրսոյ բար-
կութեամբ թօթափելով իր ախորժելի
երևակայութիւնները. ո՞ւր է:

— Հոս մօտ է Օրլանտուչչիոյ. քեզի
կը սպասէ: Ետ դարձիր, ետ դարձիր:

— Կը սպասէ՜ ինծի. տեսա՞ր զինքը:

— Այո, Օրս՛ Անթոն. ես թուփերուն
մէջ պառկեր էի՝ երբոր ինքը անցաւ.
չորս դին կը նայէր դիտակով:

— Ո՞ր կողմէն կ'երթար:

— Հոստեղէն վար կ'իջնար դէպ 'ի
այն կողմն ուր դու կ'երթաս:

— Շատ աղէկ. շնորհակալ եմ:

— Օրս՛ Անթոն, չես սպասեր հօրեղ-
բօրս. քիչ ատենէն կը հասնի, և ան ա-
տեն ապահով կ'ըլլաս:

— Մի՛ վախեր, Չիլինա. ես պէտք
չունիմ հօրեղբօրդ:

— Թէ որ կ'ուզես, առջեւէդ երթամ։

— Պէտք չէ։

Ու մտրակելով ձին, աղջիկան բած կողմը դնաց։

Սկզբան բարկութեանը աչքը դարձած՝ բանը էր մտքէն թէ ձեռքէ չփախցընէ սա առիթն Օռլանտուչչիոյի ցածութիւնը պատժելու, որ կերած ապտակին վրէժն առնելու համար՝ ձիումը ականջը ճղքեր էր։ Ետքը քաղաքապետին տուած խոստմունքը, մանաւանդ Նէվիլ օրիորդը չտեսնելու վախը միտքը փոխեցին և գրեթէ կը փափաքէր որ չպատահի Օռլանտուչչիոյի։ Յետոյ իր հօրն յիշատակը, ձիուն եղած նախատինքն, և իր թշնամեաց սպառնալիքը նորէն բորբոքեցին բարկութիւնը, անանկ որ կ'ուզէր գտնել թշնամին, գրգռել զանիկայ ու մենամարտիլ հետը։ Այսպէս երբոր հակառակ դիտաւորութիւններով տարուած, առաջ կ'երթար, բայց խոհեմութեամբ, աղէկ զննելով թուփերն ու ցանկապատ տեղուանքը, երբեմն ալ կանգ առնելով՝ այն տարտամ ձայներուն ականջ դնելու համար, որ դաշտերէն մէջ կը լսուին [illegible]

բաժնուելէն ետքը վայրկեան վերջը (ա-
ռաւօտեան ժամը ինն էր), աստասափիկ դա-
րաւոր բլուր մը հասաւ։ Ան նեղ ճամ-
բան ուրկից կ՚անցնէր՝ նոր այրած ան-
տառի մը մէջէն կ՚անցնէր։ Գետնին վը-
րայ տաք մոխիր սփռուած էր, և աս-
դին անդին քանի մը թուփեր ու քանի
մը հաստ ծառեր թէպէտ կրակէն սե-
ցեր ու բոլորովին տերևաթափ էին՝ ա-
ռանց կենդանութեան հետքի մը, ասոր
վրայ էին։ Այրած անտառ մը որ կը տես-
նայ մարդ, հիւսիսային աշխարհ մը փո-
խադրած կը կարծէ ինքզինքը ձմե-
նային եղանակով, և կրակին լափած
տերևոց ցամաք մերկութիւնը չըքա-
կայէն անխնատակեր կատաղութեան հետ
խառնուելով՝ աւելի տխուր ու անա-
պատ կ՚երևցընէ զանոնք։ Բայց այս տե-
սութիւնն անախորժ չէր Օրայի ու մե-
ջոցիս. որովհետև բաց տեղուոյ մէջ թըշ-
նամիքը չէին կրնար դարան դնել իրենց։
Այրած մաքիէն ետքը կու գային շատ
մը մշակուած արտեր, որոնց շրջապա-
տը, ըստ սովորութեան երկրին, քարէ
պատեր քաշած են՝ քիչ մը բարձր։
Ճամբան այս պատերուն մէջէն կ՚անց-

նէր, որ սադէս անդէն անկուած շա-
գանակի ծառերը՝ հեռուանց խիտ ան-
տառ մը ձեւացուցած կ'երեւային։

Օրսայ առխպուելով զառիվար տե-
ղայն վրայ ձիէն վար իջնալու, սանձը
ձիուն վզին վրայ թողուց, և արագու-
թեամբ վար կ'իջնար մոխրին վրայէն
քալելով. երբոր քսանըհինգ քայլ հե-
ռաւորութեամբ մօտեցաւ քարաշէն պա-
տի մը, որ ճամբուն աջ կողմն էր, ճիշդ
իր դիմացը տեսաւ նախ հրացանի մը
ծայրը, ետքը գլուխ մը պատէն վեր
բարձրացած։ Հրացանը քիչ մը վար
առնուածին պէս, Օրսայ ճանչցաւ զՕ-
րլանտուչչիոյ որ հրացանը պարպելու վը-
րայ էր, մէկէն իրեն ալ իր հրացանը
շտկեց. երկուքը իրարու վրայ նշան ա-
ռած ատեննին քանի մը մանրերկրորդ
իրարու նայեցան այնպիսի ներքին այ-
լայլութեամբ մը, որ ամենէն կորիճ
մարդը կը զգայ սպաննելու կամ սպան-
նուելու միջոցը։

— Վա՛տ, ցածագի, պոռաց Օրսայ..։
Դեռ խօսքը բերանն էր, Օռլանտուչչիոյի
հրացանին լոյսը տեսաւ, և գրեթէ նոյն
մանրերկրորդին ուրիշ հրացան մըն ալ

պարպուեցաւ իր վրայ՝ ճամբուն մէկալ կողմէն. Օրաս չէր տեսած դաւէկայ պարապոցը, որ ուրիշ պատի մը ետեւ դարանած էր: Օսմանուչչիոյի գնտակը ձախ թեւը առաւ ծակեց. երկրորդը կուրծքին եկաւ, զգեստը պատռեց, բայց բարեբաղդաբար դանակին սուրպատին հանդիպելով՝ տափկեցաւ վրան ու թեթեւ նեղութիւն մը պատճառեց: Օրասի ձախ թեւը արգելը վրայ ինկաւ անշարժ, եւ հրացանին երեքը վար ծռեցաւ քիչ մը ատեն. բայց մէկէն վեր առաւ զանիկայ, եւ աջ ձեռքովը միայն զէնքն ուղղելով՝ պարպեց Օսմանուչչիոյի վրայ: Թշնամոյն դէմքը, որուն հազիւ հաղ աչուրներ կը տեսնէր, պատին ետին աներեւութացաւ: Օրաս ձախ կողմը դառնալով՝ երկրորդ հարուածը պարպեց միւսին վրայ, որ ծունկով պատած ըլլալով՝ հազիւ հաղ կը տեսնուէր: Այն անձն ալ աներեւութացաւ: Այս հրացանի չորս հարուածները անհաւատալի երագութեամբ իրարու յաջորդեր էին. եւ ոչ իսկ կէրթ զինուորը կարգահրացան պարպած ատեններն՝ ատեկց չուռ կը նետեն: Օրասի վերջին հարուա-

ծէն ետքը՝ լռութիւնը տիրեց ։ Իր զէն-քէն ելած ծուխը ծանր ծանր դէպ 'ի երկինք կը վերանար ․ պատին ետին շարժմունք չէր տեսնուեր, և ոչ թեթև ձայն մը կը լսուէր ։ Թէ որ թեւին ցաւը չըլլար, կրնար կարծել որ այն մարդիկն որոնց վրայ պարպեր էր զէնքը, իր ե-րևակայութեան ծնունդն էին ։

Օրայ սպասելով որ երկրորդ անգամ մ'ալ կը պարպուէին հրացանները, քա-նի մը քայլ առաւ ու կրակէն մնացած ծառի մը ետեւը քաշուեցաւ ։ Հոն ծըն-կըներուն մէջ առնելով հրացանը, ու-աճապարելով լեցուց զայն ։ Սակայն ձախ թեւին վէրքը սաստիկ կը ցաւէր, անանկ որ կարծես թէ ծանր բեռ մը կը վեր-ցընէր ։ Կը մտածէր թէ ինչ եղեր էին իր հակառակորդքը ․ թէ որ փախած էին, թէ որ վիրաւորուած էին, տերև-ներու ձայն մը՝ շարժմունք մը անտա-րակոյս լսած կ'ըլլար ։ Մեռեր էին ար-դեօք ․ կամ մանաւանդ թէ՝ պատին ե-տեւ ամրացած, չէին սպասեր առթին որ նորէն զէնքերնին իրեն վրայ պար-պեն ։ Այսպիսի երկբայութեամբ պա-շարած, և մտածելով որ մութը կը նուա-

զէ, ուր ծունկը գետին դրաւ, վիրաւո-
րած թեւը միւս ծունկին կռթընցուց, եւ ա-
պաւինած ծառին մէկ ճիւղին վրայ հաս-
տատեց հրացանը։ Մատուըները դայլա-
խազին երկաթին անցուցած, աչքը պա-
տին վրայ սեւեռած, ականջը անկած ու ե
իցէ ձայն մտիկ ընելու, քանի մը վայր-
կեան անշարժ կեցաւ, որ դար մը ե-
րեւցաւ իրեն։ Վերջապէս իրեն ետեւ
կողմէն հեռաւոր ձայն մը լսուեցաւ, եւ
քիչ ետքը շուն մը նետի երագութեամբ
բլրէն վար իջնալով, իր քովը կանգ ա-
ռաւ ու պոչը կը շարժէր. Պրուտոյ էր,
աւազակներուն աշակերտն ու ընկերը,
որ իր տիրոջ դաւաճանը կ'խնցրնէր.
Օրայ անհամբերութեամբ սպասեց ա-
նոր։ Շունը քիթը վեր անկած անհան-
գստութեամբ կը հոտուըտար՝ մօտա-
ւոր պատին կողմը դարձած. մէյ մ'ալ
յանկարծ խորունկ ձայնով մը փնկլին-
կաց, ցատքեց անցաւ պատը, եւ անմի-
ջապէս ետքը պատին վրայ տեսնուե-
ցաւ, ուսկից անշարժ աչքով կը նայէր
Օրայի վրայ, զարմանք ցուցընելով՝ որ-
չափ որ շուն մը կրնայ զարմանք ցուցը-
նել. ետքը նորէն քիթը վեր անկեց,

բայց այս անգամ՝ միւս պատէն ուղղութեամբ, և անոր վրայէն ալ ցատքեց։ Մանրերկրորդէ մը ետքը՝ ան պատէն վրայ ալ ելաւ, առջինէն աւելի զարմանաքով ու անհանդարտութեամբ. Ետքը անտառին մէջ նետուեցաւ, պոչը ոտքերուն մէջ առած, միշտ Օրային նայելով, և կամաց կամաց քալընտի հեռանալով, ինչուան որ քիչ մը տեղ հեռացաւ անկէ։ Ան ատեն նորէն սկսաւ վազել, և առաջին երագութեամբ բլրէն վեր ելլելով՝ ընդ առաջ վազեց մէկու մը, որ շատ շատ առաջ կու գար։

— Հասիր քովս, Պրանտոն, աղաղակեց Օրայ՝ երբոր յուսաց որ ձայնը կը հասնի։

— Ո՛հ, Օրս՛ Անտոն, վիրաւորուեր ես, հարցուց Պրանտոլաչչիոյ շունչը հատած հանելով։ Ո՞ր կողմդ է վէրքը։

— Թեւս։

— Թե՛ւդ. բան չէ։ Իսկ թշնամի՞դ։

— Վարժեմ՝ անդին խրկեցի։

Պրանտոլաչչիոյ իր շան ետևէն երթալով, մօտի պատին գնաց, և ծռելով մէկալ կողմը նայեցաւ։ Եւ գլխարկը հանելով գլխէն,

— Բարե՛ւ, ըսաւ, Պ. Օռլանտուչչիոյ։ Ետքը Օրսոյի դառնալով, ծանր կերպով մը ըսաւ. — Ահա ասանկ կ'ըլլայ մեկուն բանը լմնցընելը։

— Կ'ապրի՞ դեռ, հարցուց Օրսոյ՝ հազիւ հազ շունչ առնելով։

— Չէ չէ, գնդակիդ ցաւը թող չէ տուած։ Վայ թշուառութեանս, ան ինչ ծակ. աղէկ հրացան. գլուխը մարդու ըղեղը կը փշրէ։ Գիտես, Օրս՚ Անտոն, երբոր լսեցի՝ բի՛ֆ բի՛ֆ, ըսի ինքիրենս, Մեղք, Օրսոյի բանը կը լմնցընեն. բայց ետքը երբոր լսեցի՝ պո՛ւմ պո՛ւմ, ահ՜ գիտցի հրացանն է որ կը խօսի, ըսի։... Ի՞նչ է, Պրուսքոյ, ինչ կ'ուզես ինծմէ։

Շունը մեկ պոչը տարաւ բերաւ. Պրանտոլաչչիոյ ապշած՝ Աս ինչ բան է, աղաղակեց, կրկին հարուած. կը տեսնուի որ վառօդը սուղ է, որովհետեւ աղէկ խնայութեամբ կը գործածես զայն։

— Հոգիդ սիրես՝ ինչ եղեր է, հարցուց Օրսոյ։

— Ա՛լ մի՛ ձեռցըներ. դու որսերդ գետին կը ձգես, և կ'ուզես որ ուրիշները ժողվեն։... Պարրիչինի փաստաբանին ժառանգութիւնը հիմա որո՞ւն պիտի անցնի։

— Ի՞նչ, Վինչէնդէլլոյ ալ մեռեր է։

— Անանկ մեռեր է՝ որ ալ չկրնար ելլալ։ Մեր գլուխը ողջ մնայ։ Եկուր տես Վինչէնդէլլոն. դեռ ծնկան վրայ է՝ գլուխը պատին կռթնցուցած։ Կարծես թէ կը քնանայ. կրնայ կապարեայ քուն ըսուիլ. խեղճ տղայ։

Օրսայ սակայն գլուխը մէկդի դարձուց. — Ապահով ես որ մեռեր է։

— Դու Սամբիէրոյ Գորսայինեանն ես, որ մէկ հարուածէն աւելի չէր ներեր։ Կրկին հարուած. ասկէ ետքը իմ՝ բանս չէ հրացան պարպելը. երկու հոգի երկու հարուածով. երկու եղբարք։... Թէ որ երրորդ հարուած մըն ալ ներած ըլլայի, հայրերնին կը սպաննէի... բայց ինչ և իցէ, անիկայ ուրիշ ատենուան կրնայ մնալ... Ի՜նչ հարուած, Օրս՛ Անտոն... և ինծի պէս մարդը այնչափ ատեն է որ չկրնար կրկին հարուած իջեցընել պահպանութեան զինուորաց գլուխը։

Ասպետը խօսելու միջոցը՝ միանգամայն Օրսայի բազուկը կը զննէր և գանակոփն անոր պզտաւին թևը կը ճզմէր։

— Բան չկայ, բաւ։... Ան ինչ է որ

կը տեսնամ. կուրծքիդ վրայ զգեստդ պատռուած է... գնտա՛կ մը անցեր է հոն. չէ չէ, ապա թէ ոչ ասանկ ուժով չէր ըլլար։... Պէտք է որ թաշկինակդ և փողպատդ առնեմ... նայէ զգեստդ փըր-ճացեր է... ինչո՛ւ համար ասանկ ա-ղուոր հագուեր ես. հարսնիքի կ'երթայ-իր։... Ա՛ռ կաթ մը գինի խմէ. ինչո՛ւ դղումէ ամենը հետդ չես առներ. մը Գորխեկդացին ասանց ատ ամենին առ-նէն դուրս կ'ելլէ։ — Եարը թեւը պատե-րու մէջէն, յանկարծ կ'ըսէ. Երկի՜ն հարուած. երկիւղն ալ մէկէն մեռած... իմ ժողովրդապետս շատ ազնիւ երի-տայ... կրկի՜ն հարուած։... ինչ և ի-ցէ, վերջապէս մեր ազնիւ կրկէսն՝ Ֆիկէ-նան եկաւ։

Օրայ պատասխան չէր տար, մեռելի պէս գունատ էր ու սաստիկ կը դողար։

— Ֆիկէ, պոռաց Գրանտուչչէրը, գնա ատ պատին ետին նայէ. Աղջիկը ձեռքով տուրով աշխատելով՝ եկաւ պա-տին վրայ, և Օսլանտուչչէրյի դիակը տեսածին պէս՝ երեսը խաչ հանեց։

— Աս բան չէ, բաւ աւաղակը, գնա ատ կողմն ալ նայէ։

Աղջիկը նորէն խաչակնքեց ինքզինքը ։

— Դո՛ւ ըրիր աս բաները, հօրեղբայրս, հարցուց վախով մը ։

— Ե՛ս․ այլ ես բանի չեմ՝ գար ասկէ ետքը ։ Թէկլի, Օրայի գործն են ասոնք․ ուրախակցութիւնդ ըրէ իրեն ։

— Աղանի շատ պէտի ուրախանայ, բաւ Թէկլինա․ բայց վիրաւորուելուդ վրայ պէտի ցաւի, Օրա՛ Աննան ։

— Ահաւասիկ, Օրա՛ Աննան, մէջքդ պառնեցի, զուրցեց աւազակը․ Թէկլինա ալ ձիդ գտաւ բռնեց ։ Հեծիր վրան ու հեռու եկուր Սղացցոնայի անտառը․ նայինք մարդ կը յանդգնի՞ գալու գտնալու քեզ հոն ։ Մեր ձեռքէն եկածին չափ աղէկ կը նայինք քեզ ։ Երբոր Սրբուհւոյն Թէկլաինեայ խաչը հասնինք, պէտք է որ ձիերէն վար իջնանք ։ Ձիդ Թէկլինային կու տաս, որ կ'երթայ Աղանին իմաց կու տայ․ հիմա ճամբուն վրայ յանձնարարութիւններդ կ'ընես իրեն ։ Ամեն բան կրնաս ըսել իրեն, Օրա՛ Աննան․ աւելի յանձն կ'առնէ կտոր կտոր ըլլալ՝ քան թէ մատնել իր բարեկամները ։

— Ո՛ւր կ'ուզես երթամ, Պրանեայ, հարցուց Օրայ մարած ձայնով ։

— Քու ձեռքդ է ընտրելը. կամ բանտ կամ անտառը։ Բայց տէլլա Ռէպպիա-ներուն ցեղին մարդիկը բանտին ճամ-բան չեն գիտեր. ուստի մաքին եր-թանք, Օրս՛ Անտոն։

— Ո՛ւր եղան ուրեմն իմ ամեն յոյ-սերս, զուրցեց ցաւագին սրտին վիրա-ւորեալը։

— Յոյսերդ. դեռ ինչ կ՚ուզէիր ընել երկու հարուածով հրացանով մը։ . . . Նայէ՛ նայէ, ինչպէս ալ վիրաւորեր են զքեզ։ Այդ երիտասարդները կ՚երեւայ որ կատուներէն աւելի ամուր են եղեր մեռնելու։

— Իրենք առաջ պարպեցին, ըսաւ Օրսոյ։

— Իրաւ անանկ է, մոռցայ . . . բի՛ֆ, բի՛ֆ. պո՛ւմ, պո՛ւմ. կրկին հարուած մէկ ձեռքով։ . . . Թէ որ աւելի աղէկ կրնայ նետուիլ նէ, ես ինքզինքս կը կա-խեմ։ . . . Վերջապէս հեծար . . . երթա-լէդ առաջ մէյ մը ըրածիդ վրայ նայէ. քաղաքավարութեան դէմ է առանց բարեւ տալու ընկերութենէդ բաժնուիլ։

Օրսոյ մտրակեց ձին. արդարեւ ան-հնարին էր որ կարենար տեսնել այն խեղճերուն որոնց ինքը մահ տուեր էր։

— Օրս՛ Անտոն , կ՚ուզեմ որ շակէ շի-
տակ խօսք մը ըսեմ՝ քեզի , գոչեց ա-
ւազակը՝ ձիուն սանձը ձեռք առնելով :
Այս երկու խեղճերը կարեկցութիւն կը
շարժեն . . կ՚աղաչեմ՝ ներէ ինծի . . ա-
նանկ գեղեցիկ . . անանկ ուժով . . անանկ
երիտասարդ . . . քանի՜ անգամ՝ Օրլան-
տուչչիոյի հետ մէկտեղ որսի ելեր եմ . .
չորս օր հազիւ կայ որ սիկարի ծրար
մը տուաւ ինծի . . . Վինչէնդելլոյ ալ
միշտ զուարթ էր : . . . Իրաւ է որ ու-
րիշ բան չէիր կրնար ընել . . . և հա-
րուածն ալ անանկ աղուոր է՝ որ ցաւիլ
չըլլար . . . բայց ես վրէժ խնդրելու ա-
ռիթ չունէի իրենցմէ : . . . Գիտեմ որ
իրաւունք ունիս . երբոր մէկը թշնամի
մը ունի՝ պէտք է մէջտեղէն վերցնէ :
Սակայն Պարրիչինիները հին ցեղ են . և
դժբաղդաբար սերունդնին պիտի կոր-
սուի . . . և կրկին հարուածով մը . շատ
նշանաւոր բան :

Այսանկ Պարրիչինիներուն դամբանա-
կանն ընելով Պրանտոլաչչիոյ , աճապա-
րանօք դէպ 'ի Ստացցոնայի անտառը կը
տանէր զՕրսոյ , Քիլինան ու Պրուսքոյ
շունը :

## ԺԲ

Սակայն Աղաւնի Օրայի երթալէն քիչ վերջը իմացեր էր լրատեսներէն որ Պարրիկչինները դուրս գացեր էին. ան վայրկենէն խառնուեցաւ, տան մէջ վեր վար կը քալէր, մէյ մը խոհանոցը՝ մէյ մը հիւրերուն համար պատրաստուած սենեակները կ'երթար, առանց բան մը ընելու. մերթ ընդ մերթ ալ կանգ կ'առնէր նայելու թէ արդեօք անսովոր աղաղակ մը կը լսէ՞ գիւղին մէջ։ Տանրմէկին ատենները ձիաւորներ մնան Բեւեղբանէրս. անդրդուելի Հաղբարայեան էր, իր աչքերը, ծառաներուն ու աղաջնորդներուն։ Աղաւնիի առաջին խօսքն ան եղաւ՝ թէ Եղբայրս տեսա՞ք։ Իսկ երբ աղաջնորդին հարցուց ինչ ուղղութիւն բռնեցին եւ թէ որ ժամուն ճամբայ ելեր էին. եւ անոր պատասխաններէն իմացաւ որ աւելք էր խրառու հանդիպած ըլլային։

— Թերեւս եղբայրդ վերէն գացած ըլլայ, ըսաւ աղաջնորդը. մենք վարէն եկանք։

Բայց Ազատուհի գլուխը շարժեց և հարցմունք հարցմունքի վրայ ըրաւ։ Բնութեամբ ինքզինքը բանալ գիտէր, մանաւանդ որ չէր ալ ուզեր հիւրերուն գուշակել տալ իր վրդովմունքը. հանդերձ այսու իր այլայլութիւնն յաղթեց, և բռնադատուեցաւ հաղորդելու զայն հազարապետին ու անոր աղջկանը՝ պատմելով հաշտութեան ընդունայն փորձն որ չարագոյն վախճան ունեցեր էր։ Նեմէս օրիորդը խռովեցաւ, և կ՚ուզէր որ ամէն կողմ մարդ դրկուի. հայրն ալ կ՚ուզէր նորէն ձի հեծնալ ու առաջնորդին հետ երթալ Օրան փնտռելու։ Վերջապէս Ազատուհի մտածեց իր տանտիկնութեան պարտքն ընելու. Ջանաց որ ծածկէ, վրայ տալով հազարապետին որ սեղան նստի, և եղբօրն ուշանալուն տեսակ տեսակ պատճառներ կը բերէր, զորոնք ինքն իսկ երբեք հաւանական չէր սեպեր։ Հազարապետը մտածելով որ իր պարտքն էր կանանց սիրտ տալու, սաստիկ մեկնեց Օրայի հեռաւորութիւնը.

— Ես խօսք կու տամ որ տէլլա Բէպպէս ճամբան վայրի որսի հանդիպած

է․ և անտարակոյս չկրնալով փորձու-թեանն յաղթել, կը տեսնէք որ մանկա-ղը լեցուն պլուր դառնայ։ Ճամբան չկե-ցինք չորս հրացանի հարուած. երկու-քը աւելի սաստիկ լսուեցան, և ես ան-տեն դարձայ իմ աղջկանս. Գիտ-նաս որ տէրը Ոսկեպլեան որսի ելեր է. իմ՝ հրացանս միայն ասանկ սաստիկ ձայն կրնայ հանել։

Ադամնիի գոյնը նետեց, և Լիւզիա՝ խնացաւ մէկէն ինչ կասկած ձգեցին օ-րիորդին սրտին մէջ հազարապետին խօսքերը։ Քանի մը վայրկեան լռութե-նէ ետքը՝ Ադամնի հարցուց թէ արդեօք երկու սաստկաձայն հարուածները ա-ռանց նետուեր էին չէ՞ նէ վերջը. բայց ոչ հազարապետը, ոչ իր աղջիկն և ոչ առաջնորդը ուշադրութիւն ըրեր էին այս էական կէտին։

Մինչև ժամը մէկ Ադամնիի դրկած մարդիկներէն մէկն ալ չդարձաւ. ան-տեն իր բոլոր կարողութիւնը ձեռք առած՝ բռնադատեց հիւրերը կերա-կուր ուտելու. սակայն բայց 'ի հազարա-պետէն մէկալներ չկրցան ուտել։ Հրա-պարակին մէջ պզտի ձայն մը լսուա-

ծին պէս՝ Ադամին պատուհանը կը փա-կէր, երբոր կու գար որոտում ահաւոր նոյէն կը նստէր, և մեծագոյն սրտմտու-թեամբ կը ջանար խօսակցելու իր հիւ-րոց հետ. անմշակ խօսակցութիւն մը, որուն խօսքերն ու բառերը ուշադրու-թիւն չէին ընէր, և որ առէջ կ՚ընդհա-տէր երկայն լռութեամբ:

Յանկարծ ձիու մը վազուածքի ձայ-նը լսուեցաւ: — Այս անտառակայս եղ-բայրս է, ըսաւ Ադամին մէկ ցուցերով. բայց երբոր տեսաւ Քերիմեան Օրային ձիուն վրայ հեծած, եղբայրս մեռեր է՝ աղաղակեց կսկծագին ձայնիւ:

Հազարապետին ձեռքէն դաւաթը վար ինկաւ, Լիւզիա աղաղակեց, ամէնքը դուրս վազեցին: Դեռ Քերիմեան ժամա-նակ չունեցած վար իջնալու, Ադամին փետրոյ մը պէս թեւերուն մէջ առաւ զանիկայ ու խեղդելու չափ կը սեղմէր. աղջիկն իմացաւ ինչ կը հարցընէր Ա-դամին ահաւոր նայուածքը, և առաջին խօսքն եղաւ՝ թէ Ողջ է: Ադամին ալ չխմեց զանիկայ, և Քերիմեա զգաց կա-տուի մը արդարութեամբ գետին նե-տուեցաւ:

— Իսկ մէկալնի՞նք , հարցուց Աղաւնի խորին ձայնով :

Բէլլինա ինքզինքը խաչակնքեց ցու- ցամատովն ու երրորդ մատովը : Մէկէն Աղաւնիի դէմքին մեռելային աժգու- նութիւնը վառ կարմրութեան փոխուե- ցաւ . և մէկ մը Պարրիզինիներուն տան վրայ կրակէ աչքեր տալէն վերջը , ժըպ- տելով բառ հիւրերուն . — Ներս եր- թանք սուրճ խմելու :

Աւագակայ Հէրէկը պատմելու շատ բան ունէր , զորոնք Աղաւնի տաճկերէն կը թարգմանէր , Լիզզիա ալ անգլիա- րէն : Իրեք լեզուներէն Աղաւնի միայն ան- ձայն մնալ կ'ընէր . բայց ձեռքի անձե- ւոյն անանկ կ'ուզէր՝ որ պատասխան պա- տառ կ'ընէր : Հինգ վեց անգամ՝ ընդհա- տեց անդրկան պատմութիւնը՝ կրկին և կրկին խմելու համար թէ Պրանտալուշիեայ բաժ էր որ Օրայի վէրքը փառքադաւոր չէր և թէ անանկ վէրքեր շատ տեսեր էր : Բէլլինա պատմութիւնը ընկըզընե- լէն ետքը՝ զուրցեց որ Օրայ զիկրու- թուղթ կ'ուզէր , և կը յանձնէր քրոջը որ զուրցէ տանն եղած հիւր օրիորդի մը որ տանէն չերթայ՝ իրմէն նամակ

չատած ։ Այս խօսքին Աղաւնի ժպտեցաւ և անգղիացի օրիորդին ձեռքը սեղմեց ։

— Այո, պէտք է հեռու կենաս, ազնիւ բարեկամուհիս, գոչեց Աղաւնի համբուրելով զԼիւզին, և պէտք է մեզի օգնես ։

Երբ գզրոց մը բացաւ, մէջէն հին լաթեր հանեց և անոնցմէ փաթթերու ու գզած լաթ կը պատրաստէր ։ Իր կրակէ աչքերը, երեսին կենդանութիւնը և մերթ զբաղեալ ու մերթ պաղարեան կերպը տեսնելով, չէր կրնար գուշակել թէ արդեօք աւելի եղբօրը վէրքին վրայ մտածած էր՝ թէ թշնամեաց մահուան վրայ ուրախացեր էր ։ Մէյ մը խահուէ կը լեցնէր հազարապետին և կը պարծենար իր աղէկ շինելուն վրայ . մէյ մը աշխատելով կու տար Լիւզին ու Քէմինայի փաթթելու լաթ կարելու . և միանկերպ կը հարցնէր թէ Օրայի վէրքը շատ ցաւ կու տա՞յ ։ Երբեմն երբեմն աշխատելու միջոցը կ՚ելնէր հազարապետին . Երկու անանկ կտրիճ, անանկ պատերազմող անձինք . և ինքը մինակ, վիրաւորուած, մէկ թեւով միայն . . . երկուքն ալ գետին փռեր է ։ Ի՞նչ կարը-

ճութիւն, հազարապետ. դիւցազն չէ Օրայ: Ա՛հ Լեւդիա, ինչպիսի երջանկութիւն է խաղաղ երկրի մը մէջ բնակիլ՝ ինչպէս է ձեր աշխարհը ... Ապահով եմ որ դու դեռ չէիր ճանչնար եղբայրս ... Բայց ես բաներ էի. Բազէն թեւերը պիտի տարածէ ... Դու իրեն անուշ կերպէն խաբուած էիր ... խնդծ Օրայ:

Լեւդիա լուռ կեցեր էր. իսկ հայրը կը հարցընէր թէ ինչու համար դատաւորաց բօզը չէր ըլլուէր. և կ'ուզէր իմանալ թէ Պրանտոպաշխոյի տունը շատ հեռու էր Բիւզանդրանէրայէ, որպէս զի երթայ անձամբ իր բարեկամը: Արդարեւ իր սովորական հանդարտ կերպովը պատասխան տուաւ թէ Օրայ անտառն էր, աւազակներուն մէկը զինքը կը հոգար, և թէ շատ վտանգաւոր էր իր մարդուերեւոյթը՝ քանի որ դատաստանին ուդատաւորաց միտքին խնդրած չէր. և ապահովցուց որ ծածուկ՝ ճարտար վիրաբոյժ մը կը դրկէ հիւանդին քովը: Միայն միտքդ պահէ, պարոն հազարապետ, ըսաւ, որ հրացանի չորս հարուածները լսեր էիր, և ինծի ըսեր ալ որ վեր-

Չին պալատը Օրալ էր ։ Հազարապետը չհասկցաւ այս խօսքին վարպետութիւնը ։

Իրիկուն ըլլալու վրայ էր երբոր տխուր թափօր մը մտաւ գեղին մէջ ։ Պարբերչինի վաճառականին երկու աղուոր զաւակները կը բերէին, իւրաքանչիւրը ջորայ մը վրայ խաչաձեւ ձգուած ։ Յուղարկաւորութեան ետեւէն կու գային բարձրութեան կողմնակցաց և պարագայողներունմանց հետ էին գիւղական պահպանութեան զինուորները՝ որ մեղս ախ կը հանէին, և գեղապետին օգնականն որ ձեռքերն երկինք կը վերցընէր՝ մրմնջելով. Ի՞նչ պիտի ըսէ գաւառապետը ։ Քանի մը կանայք, որոնց մէջ էր Օրբանուշչէյի դայեակը, մազերնին կը փետտէին և սուր ձայներով կու լային կ'ողբային ։ Բայց իրենց աղաղակաւոր հեծութիւնքն այնչափ տպաւորութիւն չէին ըներ՝ որչափ ուրիշ անձի մը լուռ յուսահատութիւնը, որուն վրայ ուղղուած էին ամենուն աչքը ։ Երկու երիտասարդաց դժբաղդ հայրն էր, որ մէյ մը մէկ դիակին՝ մէյ մը մէկալին քով երթալով, հոգով ապաւինած գլուխ-

նին վեր կը վերցընէր, կապտացած չըր-թունքներուն համբոյր կու տար, այն-դացած մարմինները կը բռնէր՝ իբրև թէ երերալու ըլլան նէ՝ չճմլուէին։ Երբեմն բերանը կը բացուէր խօսք մը ըսելու, բայց ձայն մը՝ խօսք մը դուրս չէր ել-լէր։ Աչքերը միշտ դիակներուն վրայ սեւեռած, գլուխը քարի փայտի և ո՛ և ի-ցէ դիմացն եկած բաներուն կը դարձնէր։

Կանանց ողբերն ու արանց անէծքնե-րը սաստկացան՝ երբոր Օրայի սան դի-մացն հասան։ Մանաւանդ անկյա Ռեհայ-պետներուն կողմնակից հոմինեներուն բերնէն յաղթանակի ձայն մը լռու-ծին մէջ, թշնամիք չկրցան բարկու-թիւննին զսպել. և անանք վրէժխնդրու-թիւն, վրէժխնդրութիւն աղաղակին։ Քարեր նետեցին, և երկու հրացան ալ պարպուեցաւ ան որահին վրայ՝ ուր էին Աղաւնի և իր հերերը. գնտակները փեղ-կերուն մէջէն անցնելով՝ փայտի կտոր-ներ ցատքեցուցին սեղնի մը վրայ՝ որուն քով նստեր էին երկու օրիորդները։ Լիւդիա սաստիկ սոսկաց վախէն, հա-պարապետ մէկէն հրացան մը ձեռք ա-ռաւ, իսկ Աղաւնի դուռը փակեց թա-

փակ ու բացու զայն. և հոն կեցած՝ ձեռքերը տարածելով՝ թշնամիքն անէծելու համար, աղաղակեց.

— Վա՜տ մարդիկ, կանանց՝ տարականաց վրայ զէ՞նք կը պարզէք. Գործեցի՞ք էք դուք, մարդի՞կ էք. ցած մարդիկ որ եանէն միայն սպաննել գիտէք: Առաջ եկէք տեսնամ. ես մինակ եմ. Եղբայրս հեռուն է. սպաննեցէք զիս, սպաննեցէք հիւրերս. ձեզի արժանի գործ է ատիկայ:... Չէք համարձակիր, որովհետև վատ էք, որովհետև գիտէք որ վրէժխնդիր ունիք: Գացէք, գացէք կանանց մէջ լացէք, և շնորհակալ եղէք մեզի որ ձեզմէ ան ուրիշ արիւն չենք պահանջեր:

Աղաւնիի ձայնն ու շարժումքն ահաւոր ու ազդող էր. բազմութիւնը զինքը տեսածին պէս՝ սարսափած ետ քաշուեցաւ. ինչպէս թէ ան չարագործ կախարդներէն մէկն ըլլար, որոնց վըրայօք ահարկու պատմութիւններ կը պատմուին Գորսիկայի մէջ ձմեռուան իրիկուններ: Այս միջոցին յարմար առիթ սեպեցին գեղապետին փոխանորդը, գիւղական պահպանութեան զի-

նաւորքն ու քանի մը կանայք՝ երկու կողմին մէջ նստուեցաւ․ որովհետեւ տեղւոյ Ռէպպիաներուն հովիւները զէնքերնին կը պատրաստէին և կը վախցուէր որ ընդհանուր կռիւ մը կը բացուի հրապարակին մէջ։ Բայց երկու կողմի մեծերն ալ մէջտեղ չէին, և Գորսիգացիք շատ քիչ անգամ՝ ձեռք ձեռքի կու գան իրենց քաղաքական պառակտումներուն գլխաւորաց հետ չեղած միջոցը։ Թող որ Աղաւնի ալ ամենքով որ խօսքով յաղթեց, չափու մէջ պահեց իր մարդիկը․ — Թողուցէք որ լան խեղճ մարդիկները, գոչեց․ Թողուցէք որ ծերն իր միսը առնէ տանի։ Ի՞նչ բանի կու գայ այդ ծեր աղուէսն սպաննելը, որ ա՛լ ակռայ չունի խածնելու։ — Ջիուտիչէ Բարրիչինի, յիշէ՛ օգոստոս 2ը․ յիշէ՛ արիւնոտ գրպանակն որուն մէջ առատաց ձեռքդ գրեց։ Հայրս անոր մէջ քու մեզի տալու պարտքդ նշանակեր էր․ որդիքդ վճարեցին զայն։ Ա՛լ հաշուեցմանց մուրհակը կու տամ՝ քեզի, ծեր Բարրիչինի։

Աղաւնի թեւ թեւի անցուցած և արհամարհոտ ժպիտով մը տեսաւ դիակ-

ներուն թշնամեաց տունը մնայր . և երբ բազմութիւնը կամաց կամաց ցրուեցաւ , դուռը գոցեց , և սեղանատունը մինակով՝ ըսաւ Հայրապետին .

— Հայրենակցացս համար թողութիւն կը խնդրեմ քեզմէ . ոչ երբէք կրնայի կարծել որ Գորնիկացիք հրացան պարպեն տան մը վրայ՝ ուր օտարականք կան . իրենց տեղը ես ամօթով մնացի :

Իշխանը երբոր նեփիլ օրհնողն իր սենեակը քաշուեցաւ , Հայրապետը ներս մտաւ ու հարցուց թէ աղէկ չէր ըլլար որ փաղուրնէ ելլան երթան այդ գեղէն , ուր ամեն փայլկեան կրնար գտնալ մը մարդու գլուխն իջնալ , և որչափ կարելի է շուտով հեռանան այդ երկրէն՝ ուր մարդասպանութիւն և մատնութիւն միայն կը տեսնուէր :

Իշխան քիչ մը ատեն պատասխան չտուաւ . ետքը ,

— Ինչպէս կրնանք ձգել այս աղջիկն , ըսաւ , այն միջոցին որ մխիթարութեան կարօտ է : Մեր կամքէն անգթութիւն չէ այս բանս , հայր իմ .

— Ես քեզի համար կը մտածեմ , դու-

ւսկս, պատասխանեց Հազարապետը. Թէ որ հիմա Ծ.յուչերդի պանդուկն ընկալէր, ապահով կ՚ըլլայի ու չէի ուզեր այս անփորձող կռիւէն ելլելու ատենց կարծեմ ակլա Թէոդորոսին ձեռքը սրխամերու:

— Թերեւս դեռ ազատինք, հայր իմ, և մեր առեն երթանք՝ երբոր ապահով ըլլանք որ չենք կրնար ծառայութիւն մը ընել իրենց:

— Աղէկ սիրտ, դարձեց Հազարապետն՝ ազնիւական ճակատը պայծառով. կ՚ախորժիմ որ սանկ խօսքեր կը լըսեմ որդիներուն թշուառութեան դիմացներու համար: Կենանք որեմն. մարդս ալէկ գործադութեան մը մէջ ոչ երբեք կը դղջայ:

Լեւոնս չկրցաւ քուն ըլլալ. երբեմն ակռանցն եկած ձայներր՝ ասոն մէջ յարձակման ձայներ կը կարծէր. երբեմն ալ մէջտուորեկսն մէջ կը մտածէր, որ հաւանականապէս դէմացին մէջ պատկած էր այն փոկրկենսին. և կը զարմանար միջնադարեան անոր կարծեցութեանը մէջ: Ասոնկ մտածմունքներով վրադած՝ առաւօտեան դէմ սկսաւ քուն ըլ-

լոյ, և արևը շատ բարձրացած էր՝ երբոր աչքը բացաւ: Դիմացը տեսաւ Աղաւնին, որ իր արթննալուն կը սպասէր:

— Շատ անհանգիստ եղած պիտի ըլլաս մեր տունը, զրուցեց Աղաւնի. վախնամ որ բնաւ քուն եղած չես:

— Լուր մը առի՞ր իրմէ, ազնիւ բարեկամուհիս, հարցուց Լիւզիա:

— Այո, տէր. բաւական աղէկ է: Ճիօգամնդը այս առաւօտ ժամը չորսէն առաջ հոս եկաւ, և քեզի նամակ մը բերաւ. իսկ ինծի չէ գրած Օրայ: Կ'ըսէ թէ շատ նեղութիւն քաշեր է Օրայ գրելու. և թէպէտ Ճիօգամնդը յանձն առեր է գրելու իրեն թելադրածը, բայց Օրայ չէ ուզած. կռնակի վրայ պառկած գրեր է կապարէ գրչով. Գրանտալուչչէն ալ թուղթը բռներ է: Եղբայրս մեռնելու կ'ուզէ եղեր ըլլալ, և ո և իցէ պարագայի շարժմունքէն՝ անանկ դժնդակ ցաւեր կը զգայ եղեր թէ, որ աւելի շարժելու բան էր կ'ըսէ Ճիօգամնդը: Ահաւասիկ իր նամակը:

Նէփիլ օրիորդը կարդաց նամակը, որ անգղիարէն գրուած էր, և էր հետևեալը:

« Օրիորդ,

Զախող պատահարի մը մէջ իյնկայ. ո՛չ գիտէ ինչ պիտի ըսեն թշնամիքս, ինչ զրպարտութիւններ պիտի բարդեն վրաս. բայց անոնք հոգս չեն։ Զքեզ տեսնելէս վերջը մեռած ակնկալութիւն մը ծներ էր սրտիս մէջ. բայց ներկայ դէպքս աներեւութացուց այն երազը. կը տեսնեմ՝ աչքիս առջեւն իմ ապագաս, և ոչքս տարած եմ։ Այլ չեմ համարձակիր քովս պահելու ինծի տուած մատանիդ. Ղրկելով կը դարձնեմ քեզի զանիկայ։ Ողջամբ մնա. դու կ՚երթաս Պարսկաստան, և ա՛լ չենք տեսնուիր իրարու հետ. բայց ըսէ քանզի որ ես քու համարմունքդ արժանի եմ։

Օ. Տ. Ռ. »

Աղաւնի դարձաւ մամիկին Լիւզին, և անոր ծնկներին վրայ նստելով, — Անտարակոյս եղբօրս կը պատասխանես, ըսաւ։ Նամակին երրորդ հատը՝ մտածեցի որ արթնցընեմ զքեզ, բայց չհամարձակեցայ։

— Գէշ ըրիր որ չարթնցուցիր։

— Բայց հիմա ա՛լ չեմ կրնար նամակ խրկել. պատասխանը հասաւ հոս, և իրենց ճամբաները բաներ են Բեկէզրանեան. տեսնենք վերջը կրնա՞նք յաջողցընել։ Ո՛հ. թէ որ ճանչնայիր եղբայրս ...

ազնիւ ու կորիճ. Նայէ ըրածը, մէկ հոգի երկու հոգւոյ դէմ՝ և վիրաւորուած։

Գաւառապետն իրօք գեղապետին փոխանորդին խրկած մարդէն լսելով եղածը, եկեր էր Բիէդրանէրա զինուորներու հետ, և Թագաւորական գործակատարին, անոր ատենադպիրն և այն մէկտեղ առած, որպէս զի քննութիւն ընեն այս արիւնահեղութեան վրայ, որ Բիէդրանէրայի հակառակորդ ազգատոհմից թշնամութեանը վախճան տուեր էր։ Գաւառապետը մէկէն տեսնուեցաւ Նէվիլ հազարապետին և անոր աղջըկանն հետ, և վախ ցուցուց անանց որ բանին ծայրը դէշի պիտի երթայ։ — Գիտէք, գոչեց, որ կռուին վկայ չկայ, և երկու մեռեալ երիտասարդաց ճարտարութեանն ու կորըճութեանը վրայ անանկ համոզուած են ամէնքը, որ ոչ ոք կը հաւտայ որ Դ. Տէլլա Ռէպպիա կրցած ըլլայ սպաննել զանոնք առանց աւազակներուն օգնութեանը, որոնց քովը կ'ըսուի թէ ապաւինած է։

— Անկարելի է, աղաղակեց հազարապետը. Օրսօ Տէլլա Ռէպպիա պա-

տուաւոր երկաթագիծ մըն է, եւ երաշխաւոր կ՚ըլլայ:

— Ես ալ կը հաստատեմ՝ որ անանկ է՝, պատասխանեց գաւառացիները. անկայն թագաւորական գործակատարը (այս տեսակ անձինք միշտ կասկածոտ են) շատ համոզուած չէ: Իրեն ձեռքը նամակ մը կայ, որ ձեր բարեկամին վնասակար է. այդ սպառնալից նամակը Օրսոյ Օլմանտուչչիոյի գրած է, որուն մէջ տեղ մը կ՚ըսէ անոր... այս տեղւոյ որոշմունքը՝ որոգայթ մըն է կ՚ըսէ արքունի գործակատարը:

— Մանաւանդ թէ Օլմանտուչչիոյ յանձն չէ առած հետ մենամարտելու, բայց հարցադրելու:

— Հոս անանկ սովորութիւն չկայ. դարանէ կը մնեն, եւ ետեւէն կը սպաննեն զիրար. այս է հոս տեղի սովորութիւ: Կայ Պ. տէլլա Ռեպպիայի կողմն ալ վկայութիւն մը. աղջիկ մը որ կը հաստատէ թէ չորս հրացանի հարուած լսեր է, որոնց վերջի երկուքն առջիններէն աւելի սաստկաձայն եւ Պ. Օրսոյի հրացանին հարուածներն էին: Դժբաղդաբար այս աղջիկն այն աւազակներուն

մէկուն ազգականն է, որոնք դաշնակից սեպուած են. որով ասոնցմէ տուն առած կը սեպուի:

— Պարոն, գոչեց Լիտիա, մենք ճամբան էինք երբ Հրացանի հարուածները պարպուեցան, և մենք ալ նոյնպէս լսեցինք:

— Իրաւ կ՚ըսէք. այս աղէկ բան է: Դու ալ, Պ. Հազարապետս, նոյն բանը դիտեցի՞ր առջեւօք:

— Այո, պատասխանեց Նէվիլ օրիորդը. հայրս, որ աղէկ վարժութիւն ունի զէնքի, ըսաւ ինծի. Ահաւասիկ Պ. տէլլա Ռեպպիան իմ հրացանս կը պարպէ:

— Եւ այդ ձեր ըսած հարուածները եարքիններո՞ն էին:

— Այո, եարքինները՝ անանկ չէ՞, հայր իմ:

Հայրը շատ յիշողութիւն չունէր. բայց ո և իցէ առթի մէջ աղջիկանը խօսքը սուտ չէր հաներ:

— Մէկէն այս բանս պատմելու է տեղւոյն գործակատարին, Պ. Հազարապետս. Արդէն այս իրիկուն վիրաբոյժ մը պիտի գայ որ դիակները զննելով տես-

դէ թէ վէրքերն յիշեալ դէմքին եղած են :

— Ես սուտ դանիկոյ Օրայի, բաւ-հաղաղաւակոր, երանի թէ ծախուն տա-կը գացած ըլլար ... Բայց չէ, չէ. շատ գոհ եմ որ խեղճ սրտին ձեռքն է եղեր անկիկայ. ապա թէ ոչ, առանց իմ հրա-ցանքս չեմ գիտեր ինչպէս կ՚աղուաէր մորձանքէն :

ԺԹ

Միրարայժը քիչ մը ուշ հասաւ. ու-րախհաւ ճամբան դիպուած մը անցեր էր գլխէն : Ճիօզանդոյ Գասդրիգանէ հանդիպելով իրեն, բանապատեր էր եր-թալու հօրայր վերաւորեալ մը. սա-տի սարեր էր Օրայի քով և վէրքը պա-տել տուեր. եաքը շատ մը հետաքննե-լով հանկից ճամբայ դրեր էր զինքը, ը-սելով.

— Պ. Միրարայժ, կարծեմ աւելորդ է յիշեցնելը քեզի որ բժիշկ մը խոս-տովանահօր պէս պէտք է լուռ ըլլայ. որդէն մոռցած եւ գացած անդի. Եր-թան բարով. Ըսաւ ու հրացանը ցցուց :

Աղաւնի աղաչեց հայրապետին որ դիակներուն անդամահատութեանը ներկայ ըլլայ.

— Դուն ամենէն աւելի կը ճանչնաս եղբօրս հրաշալիքը, բայց, անոր հանճարը ներկայութիւնդ շատ հարկաւոր է ։ Թող որ այնչափ չար մարդիկ կան հոս, որ մեծ փառանքի մէջ կ՚ըլլանք մենք՝ թէ որ զմեզ պաշտպանող մը չըլլայ ։

Երբոր մինակ մնաց Աղաւնի Լեւոնին հետ, առաջարկեց որ դեղէն դուրս ելլեն քիչ մը քալեն, զիրենց ցաւն անցընելու համար. « Բայց օդն անսովորական աղէկ աղէկ ըսէ ինծի. շատ ատեն է որ չեմ ծծած » ։ Քալելու ատենին եղբօրը վրայ կը խօսէր Նեկին օրերին հետ. ամոլ Լեւոնս չէր իմանար որ շատ կը հետամտէին բժիշկներուն ։ Ուրեմն մնացողը վրայ էր՝ երբոր Լեւոնս անդրադարձաւ, և յորդորեց զԱղաւնի որ ետ դառնան ։ Աղաւնի պատասխանեց որ կինը կարճ ճամբայ մը գիտէր՝ որով պարծեցներին շատ կը զգուշանար, և քալած ճամբէն եկեղեց՝ հոն մտաւ ։ Քիչ ատենէն սկսաւ անանկ զար ՚ի վեր ըլլալ մը վրայ ելլել, որ բանտադատութեան մէկ

ձեռքովը ծառի ճիւղեր բռնել և մէկալ ձեռքովն ընկերը մէկանց առնել: Քառորդ մը սաստիկ դժուարութեամբ մեր ելլելէն ետքը, հասան սարահարթին վրայ, որ մամռներով և մնթուղներով (ռօձա եէմիշի) և կրանիտեայ ժայռերով շրջապատած էր: Վիւղիս սաստիկ յոգներ էր, գեղը չէր երևնար, և գրեթէ գիշեր էր:

— Գիտեմ, ազնիւ Ադամնիս, որ մոլորած պիտի ըլլանք, հարցուց Վիւղիս:

— Մի վախեր, պատասխանեց Ադամի. ետևէս եկուր:

— Բայց ապահով գիտնաս որ կը տանիս. գեղը այս կողմը չկրնար ըլլալ: Ես կ՚ըսեմ որ մենք կռնակնիս տալու ենք անոր. նայէ, աս լոյսերն որ հեռուն կը տեսնենք, առանց տարակուսի հոն է Բեէգրանէյրա:

— Ազնիւ բարեկամուհիս, խոստունք ունիս. բայց ասկից հարիւր քայլ հեռու, մարքիին մէջ...

— Ի՞նչ կայ:

— Եղբայրս հոն է. կը փափաքիմ տեսնել և համբուրել զինքը, թէ որ հաճանիս: Պատիւ քեզի հետ երայ Բեէ-

կը քնանայ։ Այս ինչ կորնչութիւն է ձեր ըրածը։

Երկու օրիորդները զգուշութեամբ մօտեցան, և տեսան Օրան տերևներու վրայ պառկած և ծածկոյթ մը վրան առած. քովն ալ կրակ վառած էր, որուն լուսաւորութիւնը քարէ պզտի պատով մը ծածկած էր. շատ տժգոյն էր Օրայ, և նեղութեամբ շունչ կ'առնէր։ Ադանի քովը նստեցաւ, և ձեռք ձեռքի միացուցած՝ լռութեամբ կը նայէր վրան. Լիւզիա ալ Ադանիի ետևը կեցաւ։ Քառորդէ մը ետքը Օրայ շարժմունք մը ըրաւ. ան ատեն մէկէն Ադանի ծռեցաւ սիրալիր համբոյրը տուաւ, և հարցմունք հարցմունքի վրայ ըրաւ վէրքերն՝ քաշած ցաւին և ունեցած պիտոյքը վրայ։ Օրայ պատասխանեց որ վիճակին համեմատ աղէկ էր. ետքը հարցուց որ Նէլլի օրիորդը Բեթղրանէրն էր դեռ, և թէ նամակ գրեր էր արդեօք։ Ադանի՞ մէկդի քաշուեցաւ ու լեցուն բերնով ծիծաղելով՝ գոչեց.

— Օրայ, Նէլլի օրիորդին վրայ գէշ մի խօսիր, որովհետև աղէկ կը հասկընայ տեղւոյս լեզուն։

— Դուն հոս եկեր ես, աղաղակեց Օրայ․ ինչ երջանկութիւն ։

— Հարկ եղաւ ընկերելու՝ քրոջդ, պատասխանեց Լիւդիա, որպէս զի կասկածի չերթան տանէն դուրս ելլելուն վըրայ ։ Ինչպէս անհանգիստ էի հոս, բաց օդի մէջ պտըտկած․ բայց յուսամ՝ որ ճամբայ ելլէնէս առաջ բանին ստուգութիւնը դուրս կ'ելլէ և կ'արդարացընեն զքեզ ։

— Ի՞նչ․ պիտի երթաք ։

— Ի՞նչ ընենք հոս․ հայրս չկրնար միշտ սպասել ։

— Հը՛ հը, բաւ Աղաւնի, մենք թող չենք տար որ երթաք ։ Դուն խօսք չտուի՞ր ինծի որ դէմքս չինես․ դեռ եւս սկսար․․․ Ես ալ քեզի ներեւնայու պիտի պատմեմ եօթանասունըհինգ տարով․ անկից զատ․․․ ։ Բայց ինչո՞ւ համար Պրուսաց կը հաչէ․ Պրանտոյպաշիկն ալ ետեւէն կը վազէ․ տեսնենք ինչ կայ ։

Ըսաւ ու վազեց անոնց ետեւէն․ ետքը անձապարանօք զատնելով,

— Չինուորներ հասեր են՝ աղաղակեց ։ Օրա՛յ, ուժ տուր քեզի որ ելլես քալես, ես ձեռք կու տամ՝ ։

— Թող տանէք զիս հոս, պատասխանեց Օրաս։ Ըսէ աւազակներուն որ իրենք զիրենք ու զձեզ ազատեն. իմ հոգս չէ որ բռնուիմ։

— Ես չեմ թողուր զքեզ, ըսաւ Գրանտուղաչչիոյ՝ որ Ագանիի տանէն եկեր էր։ Զինուորներուն տասնապետը փատարանին տուն է, փախստական բանտերու զքեզ՝ կը տանին, և ետքը կ՚ըսէ թէ կամաւ չէ բռած։

Օրաս փորձեց որ ոտքի վրայ ելլէ. քանի մի քայլ ալ ըրաւ. ետքը կանգ առաւ ու Զեմ՝ կրնար քալել, ըսաւ. դուք փախէք։

— Զես կրնար քալել նէ, կ՚ուզես որ ես կռնակս առնեմ՝ տանիմ զքեզ, գոռցեց Գրանտուղաչչիոյ։ Հանգիստ եղիր. ետեւի կողմէն կրնանք փախչիլ. ժանտարմապետն անոնց հետ ժամանակ կ՚անցընէ։

— Ոչ, չեմ՝ երթար, ըսաւ Օրաս, ու գետինը փռուեցաւ։

— Դու ուժով ես, գոչեց Գրանտուղաչչիոյ Ագանիի։ Օրասի ուսերէն բռնէ, ես ալ ոտքէն. առնէ. քալէ՛ նայիմ առաջ։

Սկսան տանիլ զՕրաս արագարագ.

Լիդիա ալ տանէն կ՚երթար։ Քիչ ատենէն հրացանի ձայն մը լսուեցաւ. անմիջապէս ետքը հինգ վեց հարուած ալ։ Լիդիա աղաղակեց. Պռանտոլաչչիոյ հայհոյեց և քայլերը երագեց. Աղանի ալ նոյնպէս կը վազէր, առանց ուշադրութիւն ընելու ճիւղերուն որ երեսին կը զարնուէին և երբեմն զգեստը կը պատռէին. — Գլուխդ վար առ, սիրելիս, կ՚ըսէր Լիդիոյ, չըլլայ որ գնտակ մը գայ գլուխդ։ Այս կերպով հինգ հարիւր քայլ առաջ վազեցին. վերջապէս Պռանտոլաչչիոյ խմբոյց որ յոգներ էր ու ինկաւ գետինը փռուեցաւ. Թէպէտ Աղանի կը յորդորէր ու կը յանդիմանէր զինքը։

— Ո՞ւր է նէվիլ օրիորդը, հարցուց Օրսոյ։

Լիդիա հրացանի հարուածներէն սարսափած, և միակերպ կանեկ անտելով անտառին թանձրութենէն, ետև մնացեր ու մոլորեր էր, և առանձին խափեալ կը ծփէր։

— Ետև մնացեր է, ըսաւ Պռանտոլաչչիոյ. բայց կորսուած չէ. հետքերնիս միշտ զիրար կը գտնան։ Մտիկ ըրէ,

Օրա՛ Անտոն, մըշտապէս շշնելով կը հանէ ժո-ղովրդապետը քու հրացանովդ : Դըժ-բաղդաբար զիրար չեն տեսներ ու իրա-րու միտս չեն կրնար ընել գիշերանց :

— Նայէ, ըսաւ Աղամնի. ձիու ձայն մը կը լսեմ, ազատեցանք :

Իրաւ դէպ 'ի իրենց կը մօտենար ձի մը, որ անտառին մէջ քալելու ատենը վախցեր էր հրացանի ձայներէն :

— Ազատեցանք, կրկնեց Գրանտո-լաշշէր, և Աղամնիի հետ դէպ 'ի ձին վազեց, բաշէն բռնեց և բերանը չուա-նէ հանգոյց մը անցընելը սանձի տեղ, մէկ ըրաւ : — Հիմա իմաց տանք ժո-ղովրդապետին, ըսաւ : Երկու անգամ սուլեց, հետևէն պատասխանն տուաւ, և անկէ ետքը Օրայի հրացանը լսեց : Ան ատեն Գրանտոլաշշէր ձիուն վրայ ցատքեց, Աղամնի եղբայրն տուաւ ատա-ղակին առջև նստեցաւ. Գրանտոլաշ-շէր մէկ ձեռքովը ուժով սեղմեց զՕր-այ, մէկալովը ձին քշեց, որ ատաղակին ոտքին հարուածները կերածին պէս՝ սկսաւ կրակի երագութեամբ անանկ զառիվայր բլրէ մը վար իջնալ, որ ու-րիշ որ և իցէ երկրի ձի հարիւր ան-գամ կտոր կտոր կ'ըլլար հոն :

Ան ատեն Ազատնի նորէն ետ դարձաւ և որչափ ձայն ունէր՝ կանչեց Նեմէի օրիորդը. բայց պատասխան չառաւ։... Քիչ մը ատեն ասդին անդին քալելէն ետքը, երկու զինուորի համդիպեցաւ, որ պտտային՝ Ո՞ւր կ'երթաս։

— Հա՛ հա՛, բաւ Ազատնի ծիծաղելով, այդչափ շշնկոց հանեցիք. քանի մեռեալ ունեցաք։

— Դու աւազակաց հետ էիր, դարցեց զինուորներուն մէկը. պէտք է որ հետեւնիս գաս։

— Շատ սիրով, պատասխանեց Ազատնի. բայց ես բարեկամուհի մը ունիմ՝ հոս, պէտք է որ առաջ զանիկայ գտնամ։

— Բարեկամուհիդ արդէն բռնուած է. մէկտեղ կու գաք բանտին մէջ քով ըլլալու։

— Բանտին մէջ. տեսնանք. հիմկու հիմա զիս իրեն քով տարէք։

Զինուորները տարին զինքը աւազակաց բնակութեան տեղը, ուր իրենց նոյն օրուան ստացած յաղթանակները ժողված էին, այսինքն Օրայի ծածկոյթը, հին սան (թէնճէրէ) մը, և ջրի կուժ

մը ։ Հոն էր Նեվիլ օրիորդը, որ զինուո-րաց՝ ասպետներուն թուին և բանած ճամբանուն վրայ բրած հարցմունքը՝ ար-ցունքով միայն պատասխան կու տար ։

Այդանի գրկախառնեցաւ հետն ու-ականջէն զուրցեց․ Ազատեցան ։ Ետքը ատենապետին դառնալով, Պարոն ը-սաւ՝ կը տեսնես որ այս օրիորդը հար-ցուցած բաներուդ վրայ բնաւ տեղե-կութիւն չունի ։ Ուստի թողէք որ գեղն երթանք, ու անհամբերութեամբ կը սպասեն մեզի ։

— Կը տանինք զձեզ հոն, մի վախնաք, պատասխանեց ատենապետը․ հոն հա-մար կու տաք թէ ինչ ունէիք անտառին մէջ ալ ատեն փախչող ասպետներուն հետ ։ Երթանք ։

— Եօթը հոգի էք, հարցուց Այդա-նի ։ Գիտէք, պարոններ, որ եթէ պա-տահմամբ Կամպլինի, Սարրօքի և Բօլի եղբարք Ս․ Քրիստինեայ խաչէն քովը գտնուին Պրանտոպաշշեայի և ժողովր-դապետին հետ, կրնան բաւական բան բանալ գլուխնիս ։ Թէ որ պատերազ-մին Տրամանտուրինի[1] հետ խօսա-

[1] Այսպէս կը կոչուէր Թէոդորոս Բօլի ։

կցութիւն պիտի ընէր , ես չեմ՝ ուզեր մէջը գտնուիլ . գնտակները գիշեր ատեն ծանօթի չեն նայիր :

Այդ ուսապակներուն անունները տպաւորութիւն ըրին զինուորաց վրայ : Ցամաքապետը նաւահանգի հրաման տուաւ , և իր փոքրիկ գունդը դէպ ՚ի Բիէզըռաներու ճամբայ եղաւ , ծածկոյթն ու անը մեկնեց տանելով . իսկ կուժէն ոտքի հարուածով մը վրէժնին առին : Լիւդլեա տխրութեամբ հեռացաւ գնաց , մտմտալով թէ հայրը ինչ պիտի զրուցէր իր հեռաւորութեանը վրայ :

Զաստաայեան ու արքունի զօրակատարը Բիէզըռանէրայի դեղապետի փոխանորդին տունը կը բնակէին . Հազարապետը իր աշխատան վրայ այլայլած՝ կ՚երթար կու գար մտածելով անոնց քով՝ լուր ուզելու համար : Վերջապէս զինուոր մը հասաւ , որ տանապետը սուրհանդակ դրկեր էր , և աւազակներուն դէմ՝ ըրած մեծ կռիւնին պատմեց . իրաւ այս կռուին մէջ ոչ մեռեալ և ոչ իսկ վիրաւոր մը եղեր էր՝ կ՚ըսէր , բայց սան մը , ծածկոյթ մը և երկու օրինակ աւար առեր էին : Քիչ

ամենէն զինուորներէն պաշարուած ե-
կան ներկայացան երկու օրիորդները ։
Կրնայ գուշակուիլ Աղաւնիի դուարթ
կերպը, Լիւդիայ խայտիլը, դաստիարակու-
հին յանկարծակի գալը, և Հազարա-
պետին ուրախութիւնն ու զարմանքը ։

— Ինծի կ'երեւայ, բսաւ դաստիարակ-
ը, որ կրնանք զանոնք ազատ թողուլ.
իրենք քալելու ելեր են և մնացածը դի-
պուածով եղած է ։ Ետքը մէկդի առ-
նելով զԱղաւնի, բսաւ. — Օրիորդ, կըր-
նաս եղբօրդ իմացընել որ իր բանը ա-
ղէկ վիճակի մէջ է ։ Դիւանկներուն քըն-
նութիւնը և Հազարապետին վկայու-
թիւնը կը ցուցընեն որ ինքը պատա-
խան տուեր է առած հարուածներուն,
և թէ կռուին առիթը մինակ է եղեր ։
Ամեն բան դիւրաւ կը յարմարցընենք.
բայց պէտք է որ ժամ մը առաջ ռա-
քէն ելլէ և բանտ մտնէ ։

Գրեթէ գիշերուան ժամը տասներկուքին
էր երբ Հազարապետը, աղջիկն ու Ա-
ղաւնի ընթրիքի նստան, որ պաղեր էր ։
Աղաւնի ախորժակով կ'ուտէր, ծաղր
ընելով դաստիարակը, աքսորին գոր-
ծակատարն ու զինուորը ։ Հազարա-

պետը կ'ուտէր առանց բերան բանա-լու, և միակերպ աղջիկանը վրայ կը նայէր, որ իր պնակին վրայէն չէր վեր-ցըներ աչքերը։ Հուսկ յետոյ անոյշ՝ բայց ծանր ձայնիւ ըսաւ Լիւգիոյ անգղիա-րէն.

— Լիւգիա՛, անէյյա Ռէպեքայի հետ կառք մը ունեցա՞ր։

— Այո՛, Հայր իմ, այսօր ունեցայ, պատասխանեց աղջիկը կարմրելով. եւ-քը աչքերը վեր առաւ, և հօրը դէմքին վրայ բարեկամութեան նշան մը չտեսնելով, գլուխը փաղեց և համբուրեց պնայը։

— Փոյթ չէ, պատասխանեց Հայա-րապետը. կտրիճ երիտասարդ է. բայց իրենց անգղիական եկեղեցին մէջ չենք բնա-կիր, գիտես. այս թէ ոչ հաւանու-թիւնս չեմ տար. խօսքս խօսք է։

— Անգղիարէն չեմ գիտեր, գոչեց Ազաւնի՛ որ ատենէն հետաքրքրութեամբ կը նայէր իրենց. բայց ապահով եմ որ բամծնեք խնայեց։

— Ըամծնես այս է, պատասխանեց Հայրապետը, որ դէնդ իսլամաս ալ-տի ատանկիք նամբարդութիւն ընելու։

— Շատ սիրով, և ես քու բերնին

կ՚ըլլամ։ Ափ ափի զարմանք, պարոն Հազարապետ։

— Այս դիպուածին մէջ կը պա-տուէին իրարու հետ, պատասխանեց Հա-զարապետը։

Ի

Թիէզրանէրայի ձախող դիպուածէն քանի մը ամիս վերջը, երիտասարդ մը՝ ձախ ձեռքը վիզէն կախուած լաթի մը մէջ անցուցած, ցորեկուընէ վերջը ձիով Պավիայէն դուրս ելաւ և դէպ 'ի Գառ-տոյ գեղը կ՚երթար, որուն անոյշ ջրով աղբիւրն հռչակաւոր է։ Դեռահասակ օրիորդ մը կ՚ընկերէր անոր՝ պզտի սև ձիու մը վրայ հեծած, որուն մէկ ական-ջը ճզքած էր։ Երբոր գետին հասան, օ-րիորդը վար իջաւ ձիէն, և յետ ձեռք տալու ընկերին որ ձիէն վար իջնայ, ձիուն թամբէն կախուած տոպրակնե-րը վար առաւ։ Ձիերը գեղացւոյ մը յանձ-նուեցան, օրիորդը տոպրակները մէծ-ծառոյին տակն առաւ, երիտասարդն ալ կրկին հարուածով հրացան մը ա-ռած՝ սկսան դէպ 'ի լեռն երթալ ու-

զաւխներ հանքէ մը վեր կ՚ելլէին ։ Եր-
բոր Փուէրչէից լերան վրայ չափաւոր
բարձրացան, կանկ առին ու խոտին վը-
րայ նստեցան ։ Կարծես թէ մարդու կը
սպասէին, որովհետև միակերպ աչքեր-
նին դէպ 'ի լեռը կը դարձրնէին, և օ-
րիորդը սակայն կը նայէր ոսկէ աղուոր
ժամացոյց մը՝ տեսնելու համար թէ խօ-
սակցութեան ժամը հասե՞ր էր արդեօք ։
Շատ ատեն չսպասեցին, շուն մը ելա-
ւ անտառէն, և օրիորդը՝ Պրոսպէր կոչա-
ծին պէս՝ վազեց եկաւ զանոնք փայփայ-
ելու ։ Քիչ ատենէն երկու մօրուաւոր
մարդիկ երեւցան, հրացաններին թևեր-
նուն տակ առած և ատրճանակներին մէջ-
քերնին անցուցած . զգեստնին զէնքեր-
նուն փայլունութիւնը չունէր, պա-
տառուած և կարկատուած էր ։ Այս չորս
անձինքը սկսան մեղմաբար խօսա-
կցիլ ։

— Վերջապէս ուրեմն, Օրդ՛ Աննա,
գոչեց հասակաւոր աւազակը, սպա-
սեցուր պատասխանէն, ըսաւ նա ։ Կը
յուսամ՝ որ փաստաբանը կրցիս չէ, որ
բարեկամութիւնը ստանանէիրք . թէև ինչպէս
է ։

— Ցոյց տուր ինծի, պատասխանեց երիտասարդը, որ տասնըհինգ օրէն կըրնամ ձեռքիս բութը հանել: Կարին Գրանման, եւ փողը գէշ 'ի խոպլիս ծամբայ պիտի եկեմ. անոր համար ուզեցի որ քեզի և ժողովրդապետին մեռք բռնով բռնեմ, և այս պատճառաւ աղաչեցի որ հոս գանուէք:

— Շատ կ'անճարեր, գոչեց Գրանտոպուշչենց. դեռ երէկ խոստացար և փողը ծամբայ պիտի եկես:

— Գործեր ունիմք, բաւ գուարթութեանն օրխոդը: Պարոններ, ձեզի ընթրիք բերի. կերէք, բայց իմ Գրանտայ բարեկամս ալ մի մոռնար:

— Դու կ'ուզես զԳրանտան, գոչեց Գրանտոպուշչինց Աղամնեի. բայց երախտապէտ է քեզի, հիմա տեսնես: Եւ հրացանը հարիւրաւոր տարածելով, ֆէնգ տեսնեմ, Գրանտայ, բաւ. Պարրեչինիներուն համար ցատքէ: Շանը տեղէն չշարժեցաւ, լեզուակը ցաւկը կը լզէր ու տերոջն երեսը կը նայէր: — Տեղէս Ռէպուպլիկաներուն համար ցատքէ. — Հարկաւորէն երկու ոտք ուելի ցատքեց շունը:

— Մտիկ ըրէք ինծի, բարեկամներս, ըսաւ Օրսայ, ձեր արուեստը դէշ արուեստ մըն է. թէ որ կեանքերնիդ սա վարը տեսնուած Հրապարակին[1] վրայ չլմնցընէք ալ՝ նէ, չատ չատ զինուորի մը Հրացանի գնտակէն պիտի իյնաք անտառի մը մէջ :

— Ի՞նչ կ՚ըլլայ, պատասխանեց Գասպրիզոնի, ան ալ ուրիչ մահերուն պէս մահ է. աւելի լաւ է քան զջերմն որ անկողնի մէջ կը մեռցընէ զմարդ, և ժառանգներուն ձեւացեալ արցունքները բանի լաց կու տայ : Երբոր մէկը մեղի պէս բաց օդուն վարժած է, ամենէն աղէկը կօշիկներովը մեռնիլն է, ինչպէս մեր գեղացիները կ՚ըսեն :

— Ես կ՚ուզէի, չարունակեց Օրսայ, որ այս երկրէն ելլէք... և աւելի խաղաղ կեանք մը անցընէք : Զոր օրինակ, չէ՞ք կրնար երթալ Սարտենիա կղզին բնակիլ, ինչպէս որ ձեր ընկերներէն շատերն ըրին : Ես այդ ճամբորդութեան միջոցները կը գտնեմ ձեզի :

— Սարտէ՞նիա, աղաղակեց Բրան-

1 Պասդիայ քաղքին այն Հրապարակին ուր գլխատապարտները կը սպաննուէին :

աղաչէր . սատանան անոնց երբեք տեսնէ . Միգի համար , շատ դէշ ընկերութիւն է Սարատնիացւոց ընկերութիւնը ։

— Ապրուստ չկայ Սարատնիայի մէջ, վրայ բերաւ Ժողովրդապետը ։ Ես , չէտակն բռնելով , կ'արհամարհեմ զՍարատնիացիս ։ Շատ կը զարմանամ , Պ . տէյլա Ռէպպիա , թէ ինչպէս քեզի պէս բան ճանչցող ու գիտցող մարդ՝ մեր անտառաբնակ կենացը չես հաւնիր , մանաւանդ որ համն ալ առիր ։

— Բայց երբոր ես ձեր սեղանակիցն ըլլալու բարեբաղդութիւնն ունեցայ , բաւ Օրաց Ժամերով , ձեր վիճակին աղէկութիւնն զգալու կարողութիւնը չունէի . և դեռ կողերս կը ցաւին ան գիշերուընէ՝ որ ծրարի մը պէս անթամբ ձիուն վրայ դրուեցայ ։

— Հապա հալածող ձեռքէն փախչելդ բանի տեղ չես դներ , կրկնեց Գասպրիզանի . Ինչպէս կրնաս անտառները ըլլալ բացարձակ ազատութեան փայլեքին՝ տանիկ ողջոյն կլիմայի տակ ։ Սա ձեռքիս ունեցածէն վերջը (հրացանը ցուցաց) ; մարդ ամեն տեղ թագաւոր

է՝ մինչև ուր որ գնտակը կրնայ հասցը-նել: Հրաման կու տան. ուրիշի եղած նախատինքներու վրէժը կ'առնեն... ասիկայ բարբարական և միանգամայն ախորժելի զուարճութիւն մըն է, զոր ոչ ումեք կը ժխտենք մենք: Թափառական ասպետի մը կեանքէն աւելի ինչ աղուոր կեանք կայ, երբոր մէկը տօն Քիշօթէն աղէկ զինեալ և աւելի խելացի ըլլայ: Հաւատա ինծի, Պ. Օրագ, աւազակի կեանքը անման է.... Թերևս դու ալ մեզի հետ կը միանայիր, թէ որ ամուսնանալու միտք չունենայիր:

— Իմ՝ նաւս անտառ չկերեր, ըսաւ Աղանի ծիծաղելով. որ մը շատ վախցաւ անոր մէջ:

— Վերջացուցէք, գոչեց Օրագ, հետս մնալ կ'ուզէք. հաճոյքներդ ըրէք. միայն ըսէք ինծի ինչ կրնամ ընել ձեզի:

— Ոչ այլ ինչ, պատասխանեց Պրանտապաշչեան, բայց եթէ մտքիդ մէջ յիշատակներս պահես: Արդէն բարերարութիւններով մեզի սատամձեանեցիք. Քիլինս օժիտ ունեցաւ. զինեալ ալ որ ձեր փարձուորը մեզի հաց և պատոյ կուտայ՝ երբ պէտք ունենանք. ուստի եր-

Թուք բարով ։ Յուսամ որ օր մը նորէն հոս Գորսիկայի մէջ կը տեսնուինք ի-բարու հետ ։

— Երբեմն առիթներ կ՚ըլլայ որ մարդ ոսկւոյ պէտք կ՚ունենայ, կրկնեց Օրսոյ ։ Հիմա որ հին բարեկամներ ենք, յու-սամ որ կ՚ընդունիք . . .

— Ստըկի խօսք մի՛ ըներ, պատաս-խանեց Գրանտոլաչչիոյ կատակ կերպով մը ։

— Աշխարհքիս մէջ ոսկին ամեն բան կ՚ընէ, վրայ բերաւ Գասդրիգոնի ․ բայց մաքիին մէջ կարիճ սիրտ միայն պէտք է և հրացան մը որ ուզած ատեննիդ կրակ առնէ ։

— Չեմ ուզեր ձեզմէ բաժնուիլ, դար-ձեալ կրկնեց Օրսոյ, առանց յիշատակ մը թողլու ։ Տեսնենք, Գրանտոյ, ինչ կրնամ ձգել քեզի ։

Աւազակը գլուխը քերեց, խոտորնակ աչք մը ձգելով Օրսոյի հրացանին վրայ ․

— Թէ որ համարձակէի, բայց . . . բայց չէ, չէ ․ քեզի ալ շատ կարեւոր է ։

— Ի՞նչ է ուզածդ ։

— Իբր բան չէ . . . բայց դանակիկդ գոր-ծածելու կերպին ալ գիտնալու է ։ Դես

միշտ կը յիշեմ այն անզգամ կոկին հարուածը՝ մէկ ձեռքով... երկու անգամ չըլլուիր անանկ բան:

— Ըսածդ աս հրացանն է. ես ալ քեզի բերեր էի. բայց կրցածիդ չափ քիչ գործածէ:

— Ոչ, չէ, քեզի պէս աղէկ չեմ կրնար գործածել, բայց ապահով եղիր որ ան առեն ուրիշ մը ձեռք կը ձգէ ինծմէն այդ զէնքը, երբոր Պրանտոյ Սամէլլի գետնին փտտած ըլլայ:

— Իսկ քեզի, Գասպարինոյի, ինչ ըսեմ:

— Որովհետև բանի կ՚ուզես յիշատակ մը ձգել, Սրատոնի քերթութիւնքը կ՚ուզեմ՝ ամենաանոյշ գիրքով. անիկայ ինծի ախորժանք մը կ՚ըլլայ և բառեն լեզուն ալ մոռցնել չտար ինծի: Պալերմոյ նաւահանգիստը աղջիկ մը կայ որ սիրեր կը ծախէ. իրենն առ, անիկայ ինծի կու տայ:

— Շատ աղէկ, ես քեզի Եզեկիէլի աստղաբաշխութիւն մը դրկեմ. ամենէն գրքերուս մէջ կայ մէկ հատ մը: — Ուրեմն, բարեկամք իմ, հարկ է որ բաժնուինք իրարմէ. բարեկամութեան ձեռք տանք: Թէ որ օր մը ուզենայք Սարտե-

նիս երթալ, գրեցէք խնդացուցէք ինծի. Ն.. փաստաբանը ձեզի հասցէս կու տայ :

— Պ. տէլլա Ռէպպիա, ըսաւ Պրանտոյ, վաղը երբոր նաւահանգստէն կ՚ելլէք, ճիշդ այս տեղւոյն վրայ նայեցէք. մենք հոս կը գտնուինք, և թաշկինակներով կը բարևենք զձեզ :

Այսպէս ըսելով բաժնուեցան. Օրսոյ և իր քոյրը Պաստիա դարձան, և աւազակները լեռն ելան :

## ԻԱ

Ապրիլ ամսու սկսուր առաւօտ մը՝ Սըր Թոմաս Նէվիլ Հազարապետը, իր աղջիկն որ քանի մը օրէ 'ի վեր կարգուեր էր, և Օրսոյ ու Աղաւնի՝ կառքով Բիզայէն դուրս ելան ետրուրական գետնափոր գերեզման մը տեսնելու, որ նոր գտնուեր էր և որուն ամէն օտարականք կ՚երթային այցելութեան : Օրսոյ և իր ամուսինը մէջը մտան և սկսան կապարագրչով մէջի նկարքը ստուարագծել. բայց Հազարապետն ու Աղաւնի հնագիտական բաներու անտարբեր ըլլալով, դա

նանք ներսը ձգեցին ու իրենք դուրսը կը պառկէին :

— Աղջիկ Աղաւնի, հարցուց Հազարապետը, շատ ուշ պիտի դառնանք Թե-դա. անօթի չէս. Օրայ և աղջիկս ո՛ գիտէ երբ կը լմնցընեն ուրուագրութիւննին : Իմ կարծիքս այն է՝ որ սա գիւնեցնիս առած փոքրիկ գիւղակին տունն երթանք. յուսամ որ հաց և ըմպելիք, թերևս տեղ և եղակ ալ կը գտնանք հոն, և անանկ կը սպասենք մեր ուրուագրողներուն :

— Իրաւունք ունիս. պարտաւորեալ չենք մենք իրենց գոհ ըլլալու : Երթանք ուրեմն. — Է՛ չխօսիր դուրսէ, շատ չեմ փոխուած. նայէ հիմա գլխարկ կը դնեմ, նորերուն զգեստներ կը հագնիմ, դողաբեղէններ ունիմ, ամեն օր նոր նոր բաներ կը սորվիմ. վերջապէս, ալ վայրենի չեմ :

— Անտարակոյս քեզ առնելէն ուրիշ հարանիք մ՚ալ պիտի ունենանք :

— Ե՞ս կարգուիմ. Հայրս եղբօրորդիս ձիլ պիտի պատրաստէ, երբոր Օրայ պսակ մը ունենալու ըլլայ. ձիլ իրեն դորմիզացիներէն խօսիլ պիտի սոր-

մեզմէ : . . Այո , գործակիցներէն պի-
տի խօսի , և ես սրածայր գլխարկ մը
պիտի չինեմ իրեն , որ բարկացընեմ
զինք :

— Նախ սպասէ որ եղբօրորդի մը ու-
նենաս , անկէ ետքը թէ որ ուզես նէ՝
թուր գործածել կը սորվեցընես իրեն :

— Ա՛լ թուրերը տեղերնին կենան ,
պատասխանեց Ագանի ժպտելով . հի-
մա իմ ձեռքս հախճար կայ , որպէս զի
մատուրներուդ զարնեմ՝ երբոր երկրիս
վրայ գէշ խօսիս :

Անանկ խօսակցելով մտան տունը ,
ուր գտան գինի , եղակ և սեր : Ագանի
օգնեց փարձուոր կնոջն եղակ ժողվելու ,
ան միջոցին որ հազարապետն աչկա-
դիտոյ կը խմէր : Ծառազարդ ճամբու
մը անկիւնը դարձած միջոցը , Ագանի
ծերունի մը տեսաւ աթոռի մը վրայ
նստած արևուն առջև . Կ'երևար թէ հի-
ւանդ էր , որովհետև թուշերը ներս գա-
ցած էին և աչքերը խորցած . արտա-
քոյ կարգի նիհար էր , և անանկ ան-
շարժ , դունատ ու սեւեռեալ աչքով տե-
նելով զինքը մէկը աւելի դիակ կրնար
կարծել քան թէ կենդանի էակ մը : Ա-

դամնի անանկ հետաքրքրութեամբ քա-
նի մը վայրկեան վրան նայեցաւ, որ
վարձուոր կինը դարձաւ ըսաւ իրեն.
— Այս խեղճ ծերը քեզի հայրենակից
է, որովհետեւ խօսակցութեանց կեր-
պէն կ'իմանամ որ գօրալիզացի ես։ Թը-
շուառութիւններ ունեցեր է իր երկրին
մէջ. տղաքը ահաւոր մահ մը ունեցեր
են. կ'ըսեն թէ հայրենակիցներդ անո-
ղոք են իրենց թշնամեաց դէմ։ Այն դի-
պուածէն ետքը մինակ մնալով՝ հոս Բե-
րա եկեր է իր մէկ հեռու ազգականին
խաթունին քով, որ այս տան բուն տէրն
է։ Ողորմելին քիչ մը խելքը փախու-
ցած է. դժբաղդութիւնն ու մաղձոտու-
թիւնը . . . ։ Խաթունը չկարենալով քը-
վը պահել, որովհետեւ շատ մարդ կ'ըն-
դունի իր տունը, հոս դրկեց զինքը։
Բնաւորութիւնը անոյշ է, եւ բնաւ նե-
ղութիւն չտար. հազիւ թէ իրեք բառ
կը զուրցէ օրուան մէջ։ Ամեն շաբաթ
բժիշկ կու գայ տեսնելու զինքը, եւ խեղ-
ճին տղայանալը տեսնելով՝ ըսաւ որ եր-
կայն ատեն չապրիր։

— Ուրեմն բանը բաւե՞ր է, գուրցեց
Ադամնի։ Իր վիճակին նայելով՝ մեռնիլն
իրեն համար երջանկութիւն է։

— Թէ որ հետը գորաւիզացիներէն խօսիս, ազնիւ օրիորդ, թերեւս ամօթի քէչ մը՝ հայրենեաց լեզուն խօսել:

— Նայէ՛նք, ըսաւ Աղաւնի ժպտելով. եւ մօտեցաւ ծերունւոյն, մինչեւ որ իր շուքը անոր վրայ ինկաւ: Այն ատեն խեղճ աղքատը աչքերը վեր վերցուց եւ ուշադրութեամբ մը նայեցաւ Աղաւնիի վրայ. անիկայ ալ իրեն կը նայէր, միշտ ժպտելով: Ծերունին ձեռքը ճակտին չփեց եւ աչքերը գոցեց. կարծես թէ Աղաւնիի նայուածքէն կը խորշէր: Ետքը արտաքոյ կարգի բացաւ զանոնք. շրթունքը կը դողային, ձեռքերը կ'ուզէր տարածել. բայց կարծես թէ Աղաւնիէն գիւթուած՝ անշարժ մնաց աթոռին վրայ, եւ կարողութիւն չունէր խօսելու կամ շարժելու: Վերջապէս խոշոր արցունքի հատիկներ աչքէն կաթեցին, եւ հառաչանքներ ելան սրտէն:

— Առաջին անգամ՝ ատանկ կը տեսնեմ զինքը, ըսաւ պարտիզպան կինը: Ետքը ծերունին դառնալով՝ ըսաւ. — Այս օրիորդը քու երկրէդ է. եկեր է զքեզ տեսնելու:

— Գիտեմ վրաս, պատասխանեց ծերու-

ղին խաղցուկ ձայնիւ, ողորմէ ինծի․ դեռ գոհ չեմ։ Այն թերթ թուղթն . . . որ ես այրեր էի . . . ինչպէս կրցար կարդալ դու զայն . . .։ Բայց ինչու համար երկուքն ալ . . . Օռլանտուչչիոյի դէմ բան չես կրնար կարդացած ըլլալ ան թղթին մէջ։ . . . Պէտք էր մէկը թողուլ ինծի . . . մէկ հատը միայն . . . դու Օռլանտուչչիոյի անունը կարդացած չես . . .

— Երկուքն ալ պէտք էր ինծի, ըսաւ Աղաւնի ցած ձայնով կորսիկացիերէն։ Ոստերը կտրուեցան, և թէ որ բունը փտած չըլլար, զանիկայ ալ քաշած հանած էի։ Մի գանգատիր վիճակիդ վրայ. ոչ երկայն ատեն չես քաշեր. ես երկու տարի քաշեցի։

Ծերունայն բերնէն աղաղակ մը ելաւ, և գլուխը կուրծքին վրայ ինկաւ։ Աղաւնի դարձաւ և ծանր ծանր քալելով դէպ 'ի տունը գնաց, պալլադայի մը այս ծանօթ խօսքերն երգելով. «Ան ձեռքը պէտք է ինծի՝ որ հարուածը զարկեց, այն աչքն որ նշան առաւ, այն սիրտն որ մտածեց» . . .։

Այն միջոցին որ պարտիզպան կինը

ծերունւոյն քով վազեր էր օգնելու. Ազատնի կենդանի դէմքով և հրացայտ աչքով սեղան նստաւ հազարապետին դիմացը:

— Ի՞նչ ունիս, հարցուց անգղիացին. ճիշդ անանկ կը տեսնեմ՝ զքեզ՝ ինչպէս Բիւէզդրանէրայի մէջ այն օրն որ կերակրոյ ատենը գնտակներ նետեցին նստած սենեակնիս:

— Գորսեփդայի յիշատակներ ծնան մտքիս մէջ. բայց անցան գացին: Ես պիտի ըլլամ եղբօրորդւոյս կնքահայրն, անանկ չէ: Ո՜հ ինչ աղուոր անուններ պիտի դնեմ. Կիլֆուչչիոյ—Թովմաս—Օրսոյ—Լէրն:

Այն վայրկենին պարտիզպանին կինը ներս մտաւ: — Ի՞նչպէս, հարցուց Ազատնի բոլորովին սպառ արբեալք. մեռա՞ւ չէ նէ պառող մարեցաւ:

— Բան չկայ. բայց ինչպէս զքեզ տեսնելը վրան անանկ տպաւորութիւն ըրաւ:

— Բժիշկը կ'ըսէ թէ երկայն չքնանար:

— Թերևս և ոչ իսկ երկու ամիս:

— Մեծ կորուստ մը չըլլար, վրայ բերաւ Ազատնի:

— Որո՞ւն վրայ է խօսքերնիդ, հար-ցուց Հազարապետը:

— Ինծի հայրենակից ազնիւ մարդու մը վրայ, որ հոս թշուառ կ՚ապրի, պատասխանեց Ազատին անտարբերութեամբ: Երբեմն երբեմն մարդ կը դըրկեմ՝ որ լուր առնեմ՝ վրան: Բայց կ՚աղաչեմ՝, պարոն Հազարապետ, քիչ մը երակ ձգէ եղբօրս և Միւղինյ:

Երբոր Ազատին ելաւ տնէն ու կառքը մտաւ, վարձուոր կինը կտոր մը ատեն վրան նայելէն ետքը՝ դարձաւ ըսաւ իր աղջիկանը. — Կը տեսնես աս վայելուչ օրիորդը, ես ապահով եմ՝ որ աչքիդ է:

ՎԵՐՋ